ՔԱՋԲԵՐՈՒՆԻ

# ՀԱՅԿԱԿԱՆ

# ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ



*Արտատպուած*

**Ազգագրական Հանդէսից**



ԹԻՖԼԻՍ
*Տպարան Կ. Մարտիրոսեանցի* || Тип. К. Мартиросіанца
1903

ՔԱՋԲԵՐՈՒՆԻ

# ՀԱՅԿԱԿԱՆ

# ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ



*Արտատպուած*

**Ազգագրական Հանդէսից**




ԹԻՖԼԻՍ

*Տպարան Կ. Մարտիրոսեանցի* || Тип. К. Мартиросіанца

1903

# ՀԱՅԿԱԿԱՆ

# ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

---

## ԵՐԿՈՒ ԽՕՍՔ.



ատ տարիների ընթացքում, պետական ծառայութեամբ կապուած, ես միջոց և պարտաւորութիւն եմ ունեցել ճանապարհորդել Երևան, Զարուր, Դարալագեազ, Հին Նախիջևան, Հին Ջուղայ, Ագուլիս, Ալէքսանդրապօլ, Ղարս, Ներքին և Վերին Բասէն, Շիրակայ գիւղերը և Ղազախ գաւառը, նոյնպէս Շամախի իւր գաւառով հանդերձ։

Անսահման ցանկութիւններիցս մինն է եղել կարելոյն չափ ընդարձակ զննողութեան և ուսումնասիրութեան առնել ազգային սովորութիւնները, աւանդութիւնները, երգերը այդ հայաշատ գաւառներում։

Համաձայն ցանկութեանս ես գրի եմ առել այն բազմազան և բազմատեսակ նիւթերը հայ ազգի կեանքից, որոնց մի խոշոր քանակութիւն մինչև այսօր անմշակ և անտիպ մնալով, միւս մասը կարողացել եմ լրագրութեան միջոցով մատուցանել հայ հասարակութեան ընթերցող բաժնին։ Վերջին կանչին են պատկանում իմ «Ճանապարհորդական Նկատողութիւնք» ստուար աշխատասիրութիւնը և այլք շատերը։

Այժմ ևս պատրաստելով սոյն հաւաքածուն ազգային ներքին կեանքից, տալիս եմ տպագրութեան, յայտնելով սակայն ընթերցողներին, որ ժողովուած նիւթիցս այս կամ այն երգը, առածը, ասուածը և այլն կարող են կցկտուր տպագրուած լինել, բայց դա ինձ չէ կարող արգելք լինել նորից տպագրելու, քանի որ ես լիակատար իրաւունք ունեմ օգտուելու շատ տարիների ընթացքում քաղած նիւթերից։

Նկարագրած սովորութիւններից, որոնք ունին ազգային հասարակաց կեանքի մէջ պատմական խորութիւն, շատերը աննկատելի կերպով արդէն մոռացուել են. ոմանք սակաւ առ սակաւ մոռացւում են կեանքի նոր հոսանքի ազդեցութեան տակ, ուրեմն մոռացուածը կարող է պահել միայն գրականութիւնը։

# ՏՕՆԵՐ

## ՔՐԻՍՏՈՍԻ ԾՆՆԴԵԱՆ ՏՕՆԸ

այոց կեանքում Քրիստոսի ծնունդն և մկրտութիւնն ունին ամենաարքայական նշանակութիւն։ Այդ տէրունական տօնը կատարւում է ամենայն ջերմեռանդութեամբ, և նորան մասնակցում են անխտիր և՛ մեծը և՛ փոքրը, և՛ գրագէտը և՛ անգրագէտը, հովիւն ու քահանան և այլն։

Ո՞ւմ չէ յայտնի արդեօք, որ Յունվարի 5-ին, *թաթախ-ման* երեկոյին, տղրացուները ժամաշապիկ հագած երկերկու, երեք երեք, երբեմն և քահանայք, քաղաքներում պտտում են ծանօթ և անծանօթ տները «Այսօր տօն է» երգում ու վարձատրւում։ Կար ժամանակ, որ Ղազախի գաւառում երկերկու տղրացուներ, ժամաշապիկ հագած, խուրջինը ձգած մի խոնարհ էշու վրայ, մի ուրիշ խոնարհ էշապան առաջ ձգած պտտում էին մի երկու շաբաթով, գիւղից գիւղ, տնից տուն և «Այսօր տօն է» երգելով՝ ժողովում էին ալիւր, ցորեն, պանիր և այլն։

Քրիստոսի ծննդեան առթիւ հայ ժողովրդի բանաստեղծական ոգին յօրինել է զանազան տեղերում ժողովրդական անպաճոյճ երգեր։

Ծննդեան երեկոյին պատանիները խումբ խումբ պտտում են գիւղի տները և այն կարգով, որ նոցանից ներս է մտնում տուն մինը կամ երկուսը, իսկ մնացեալ խումբը բարձրանում է տան տանիքը և փոքրիկ ծակից կախում թոկով կամ գօտիներով *տոպրակ* (Ղազախ, Աշտարակ և այլն) կամ *գուլպայ* (ձարուր) կամ *բթոց* (ասլա) մէջը վառ ճրագ (Դարալեագեազի Խաչիկ գիւղում) և խմբից մինը երգում է հետևեալը.

Ղեսարակ եւ շրջակայ գիւղերում

Ալելուեա ալելուեա
Եւ ցնծացէ՛ք, ուրախացէք,
Մեր Մարիամի պասն բացէք,
Մարիամ գնաց լեռն ի Ծնունդ,
Ծննդեցաւ, ազատուեցաւ,
Հրէս եկաւ մի ձիաւոր,
Լախտը ձեռւին բող ձիաւոր,
Աջու ձեռւին աւետարան,
Ձախու ձեռւին սաղմոսարան,
Ձինի, չինի, ձեր տղեքանց անունն ինչ ա.

Տան ընտանիքներից մինը յայտնում է գերդաստանի ամենափոքրի անունը, որից յետոյ երգիկլցը նորից շարունակում է.

«Արուսեակին» ու «Արմայիսին» քաղցը հանենք,
Աջու ձեռը ջէբը տանենք,
Խուշ՚անի աչքը հանի,
Տասը շահին չարը տանի։

Կանայք դնում են տոպրակի, զուլպայի կամ քթոցի մէջ մրգեղէն, քաղցրեղէն, փլաւ կամ այլ չոր կերակուր։ Զուարճութեան համար երբեմն դնում են կատու։

Վաղարշապատում

Հրէս եկաւ մի ձիաւոր
Լախտը ձեռւին բօզ ձիաւոր
Աջու ձեռւին աւետարան,
Ձախու ձեռւին սաղմոսարան.
Ձինի, չինի, ձեր տղեքանց անունն ինչ ա։
«Նրշաւիրը» Նստի թաղը,
Ձեռը տանի ջիբը.
Մի բուռն ոսկի հանի,
Չարը տանի, բարին բերի։

Ղ ա զ ա խ

Ալելուեա, ալելուեա
Աշէն, աշէն էս անաշէն
Սեղան քաշեն էս անաշէն,

Հրէս էրի մի ձիաւոր,
Լախտը ձեռին բօզ ձիաւոր,
Աջու ձեռին աւետարան,
Ձախու ձեռին սաղմոսարան,
Ըստով գրեց, ընդով ջնջեց,
Քոռն ու քաչալ սըղըցրեց։
Սւագ մոնթին կաշտռքեցին.
Դբա Մարիամ ուղարկեցին.
Մարիամն էրի լալով, լալով,
Լալ մի, լալ մի ճըճկեօհալով.
Որ ոտ փոխէր արքն հաղէր,
Փունջ մանիշակ ետնէն հաղէր.
Հրէս էրի էրիցընին,
Իրար էդուս գեանգիշ անին
Կաթնաղբիւրը փըւքըցըրին.
Օրհնել Աստուած կեարունքացաւ.
Երգեան կիւթան մեգնուեցաւ,
Ջուխտ օրօրոց օրօրուեցաւ,
Տընըշէն, տընըշէն, ձեր փստըկի անունն ինչ ա։

«Գուրգէն» ու «Տիգրան»
Հօրը տայ, մօրը տայ,
Ծաղկեն ծլեն,
Ձեռը ջիբը տանեն,
Չալ աբասին հանեն.
Չարը տանի մի թունգի գինի,
Մի գթալ եղ, երկու ձու,
Երկու ձուկը մի ջամ ալիր,
Ով որ էսքան ասածս չ՚տայ,
Կաց գէլը մօրը տանի։

Ճարուրի Ուլնիա-Նորաշէն գիւղում, որ գաղթած են Սալմաստի գաւառից, Ծննդեան երեկոյին երգում են հետևեալ երկու երգերից փոփոխակի մինը կամ միւսը։

Ակլը մարեմ, մարեմ, մարեմ.
Ձեր տղայի սօլը կարեմ,
Փշատ տուէք փորս լարեմ,
Չամիչ տուէք ատմըներս շարեմ,
Ընգեօզ տուէք գլուխ կոտեմ.
Աստուած ձեր խարսնը փեսան պախի։

Միւս երգը.

Էրնէկ էրնէկ էն տարեցին, ալելիա,
Շինեցին կամարեցին, ալելուիա,
Բարձր բոլորը բերեցին, ալելիա,
Էրնէկ քեզի՝ սուր չէր մսուրք, ալելուիա,
Որ Քրիստոս քեզ մէջ ծնուեցաւ, ալելիա.
Էրնէկ քեզի՝ բրութ խանձարութ, ալելիա,
Քրիստոս քեզ մէջ փաթաթեցին, ալելուիա,
Էրնէկ քեզ Խորոմսիմայ, ալելուիա.
Որ Քրիստոսին տատմեր էլար, ալելուիա,
Քրիստոս քեզ մէջ մկրտեցին, ալելուիա.
Էրնէկ քեզի սուրբ Օհանէս, ալելուիա,
Որ Քրիստոսին քաւոր էլար, ալելուիա.
Էրնէկ քեզի, սուրբ Յորդանան, ալելուիա,
Աստուած ձեր խարսնը փեսան պախի
Մեր փայը տուէք։

Դարալագեազի Խաչիկ գիւղում, որ բնիկ Հայեր են.

Ցնծացէք, ուրախացէք, ալելուիա,
Մեր Մարիամի պասը բացէք, ալելուիա,
Մարիամ գնաց դուռ տաճարին, ալելուիա,
Մէջքն տուեց խաչափայտին, ալելուիա,
Հնչեց բերեց Յիսուս որդին, ալելուիա,
Յրանիք (երանի) քէ, Հոռոմսիմա, ալելուիա,
Որ Քրիստոսին տատմէր ըլար, ալելուիա,
Յրանիք քէ, բուրթ խանձերուն, ալելուիա,
Քրիստոս միջին փաթաթին, ալելուիա,
Յրանիք քէ, գետ Յորդանան, ալելուիա,
Քրիստոս միջին մկրտին, ալելուիա,
Յրանիք քէ, սուրբ Յոհաննէս, ալելուիա,
Քրիստոսին քաւոր էլար, ալելուիա,
Յրանիք քէ բարձր օրօրոց, ալելուիա,
Քրիստոսին միջին օրօրին, ալելուիա
Առին յուրադ, առին սղոց, ալելուիա,
Գնացին ծառնի խնկան, ալելուիա,
Յուրագ տուին, ծառնի ճչաց, ալելուիա
Սղոց քաշին, արիւն բխաց, ալելուիա.
Ձեր տղի անունն ի՞նչ ա.
«Ռուբէն» ու «Պարոյր» ճութեր ճութացաւ, ալելուիա.
Քանց բարդի ծառ, էրկենացաւ, ալելուիա.

Ճիւղքեր գցեց քաղքէ քաղաք, ալելուիա,
Ամէն ճղքին ջուղտմ ճրագ. ալելուիա,
Մեր փայը տուէք ինչ կամենաք։

Ղազախու «Սև քար» գիւղում յիշեալ երգի վերայ աւելացնում են հետևեալը.

Պէնպէնակ,
Ասծու հալակ ծտենակ,
Ընկերս ընկաւ ծովը.
Ծովը դառաւ ծիրանի,
Մազէն իրի կըռըկտուց,
Չաւը թռցրուց,
Քուխտը ո... պրցրուց։

Սուրբ Էջմիածնի շրջակայ գիւղօրայքում ընդունում են, որ Յունուարի 5-ին, Ծննդեան նախընթաց երեկոյին գետերի, առուների և միւս հոսող ջրերը միաժամանակ կանգ են առնում մի վայրկեան տևողութեամբ։ Եթէ կարողանաք իմանալ այդ վայրկեանը և հոսող ջրի մէջ դնէք մի իր, օրինակ սափոր և, հէնց այդ ջուրը կանգնելու վայրկենին ասէք. «Սափորը ոսկի դառնայ»՝ նա իսկոյն ոսկի կը դառնայ։

Շիրակայ գիւղերում տղայքը փայտեայ կժերով, որ նորանցում կոչւում է «քիւլակ», «քուղայ», գետից ջուր են բերում տուն այն յուսով, որ ջուրն էլ, ամանն էլ ոսկի դառնան։

Փարալագեազցիք ընդունում են, որ այդ գիշերը կանգ են առնում ոչ միայն ջրերը, այլ և բոլոր առարկաները, քամի, օդ, ծառ, քար, խոտ և այլն։ Սոքա ևս ընդունում են որ առարկաները ջրի մէջ ոսկի են դառնում, միայն ոչ թէ Ծննդեան, այլ Համբարձման երեկոյին, երբ երկու աստղ՝ Լէյլին և Մէջլումը երկնքումը իրար կըհամբուրեն։ Բասենումը նոյնպէս ընդունում են ջրի կանգնումը, սակայն նորանց կարծիքով այս իրողութիւնը կատարւում է *կաղանդի* գիշերը՝ դեկտեմբերի վերջին գիշերը։

Բասենում համոզուած են, որ եթէ մանուկը ծնուի Ծննդեան երեկոյին կամ Զատկի *խթման* կամ *թաթախման* երեկոյին, որ սեւի և լինի նա, եթէ նորա ձեռի եղնկլին քսեն

նոր մորթած սև հաւի արիւն՝ այդ մանուկը կըդառնայ եղունկով հմայող:

Վերջապէս Ծննդեան այդ անհանգիստ երեկոն անցնում է և հետևեալ օրը կատարւում է Քրիստոսի սուրբ մկրտութեան հանդէսը։

Ղազախում Ջրօրհնեաց հանդիսում, երբ երգւում է «Առաքելոյ աղաւնոյ» և քահանան սուրբ մեռոնը կաթեցնում է ջրի մէջ, ամեն սեռի ու հասակի բնակիչք իրարից առաջ կտրուկ սնելով աշխատում են ամաններով ջուր վերցնել և տանելով տուն՝ ածում են մի փոքր խաշի՝ այսինքն թթուխմորի մէջ, մի փոքր ալիւրի մշտական ամանի մէջ, մի փոքր խմորի տաշտի մէջ և մնացածը շաղախում են մոխրի հետ և գնդակ շինելով պահում են, որ հարկաւոր ժամանակ նորանով սրբագործեն այն ամանները, որոնց պատահմամբ դիպել և ճարամել է շունը կամ մուկը։

Շիրակում և սուրբ Էջմիածնի շրջակայ գիւղերում Ծննդեան տնօրհնութեան ժամանակ, երբ քահանան ընթեռնում է աւետարանը, տան կանայք թթուխմորը իւր ամանով բերում դնում են նորա առաջ, որ վրան աւետարան կարդացուելով հացի առատութիւնը անպակաս լինի։

## Ս. ՍԱՐԳԻՍ ԶՕՐԱՎԱՐԻ ՏՕՆԸ.

Ղազախ, Շիրակ, Վաղարշապատ, Գարալագեազ և այլ տեղեր Սուրբ Սարգսի պասի ուրբաթ երեկոյին պաղ ջրով փոխինդ են շաղախում և նորանով թաթախւում։ Փոխինդը (Ղազախում փոխինձ), ինչպէս յայտնի է, լինում է բոված և երկանքով աղացած ցորենի ալիւրը։ Այդ երեկոյին փոխինդի ալիւրը դնում են Աշտարակ՝ աստղերի տակը, Շիրակում՝ դուռը բաց տան մէջ, իսկ այդ տեղերում՝ տան մէջ կամ եկեղեցում, որպէս զի գիշերը սուրբ Սարգիսը ձի հեծած գայ և փոխնդի վրայով անցնի։ Անցնելու ժամանակ նորա ձիու մի ոտը դիպչում է փոխնդին և նորա վերայ թողնում է պայտի հետքը։

Սուրբ Սարգսի երեկոյին երիտասարդ տղայք և աղջկունք ուտում են աղի հաց և գիշերը ծարաւում են և երազում, որ տղան աղջկան, կամ աղջիկը տղային ջուր տայ խըմելու, նա էլ կը լինի նորա ապագայ ամուսինը։

Ճաբաթ առաւօտ եփում են փոխնդից շփոթանման կերակուր—*խաշիլ*—և ուտում են։ Մի քանի գաւառներում երիտասարդ տղայք կամ աղջկունք լաւաշի կտորի մէջ փաթթում են խաշիլը և դնում են տան երդիկը, կտուրը։ Կաչաղակը կամ ագռաւը կտցում և փախցնում է խաշիլը և որ տան կողմը նա թռաւ, այն տան տղան կամ աղջիկը կըլինի նորա ամուսինը։

## ՏԵԱՌԸՆԴԱՌԱՋԻ ՏՕՆԸ

Տեառընդառաջ բառը աղաւաղուած կոչւում է Ղազախում *տոռոնջ տոռոնջ*, Հին Ջուղայում՝ *տառինջ տառինջ*, Վաղարշապատում *դըրընդէզ*, Պոլսեցագղի բնիկների մէջ՝ *դառդառանջ*, գաղթականների մէջ՝ *տնրինտառաջ* կամ *տանտառէջ*:

Հին Ջուղայում փշէ դէզը պարտաւոր են պատրաստելու եկեղեցու գաւթում նոյն տարում պսակուած երիտասարդները։ Հանդիսակատարութեան ժամանակ նոյն երիտասարդները վառ մոմերը ձեռքում շարքով կանգնում են դէզի առաջ։ Երբ քահանան կարգը կատարելով իւր մոմով առաջինը վառում է դէզը, նորանից իսկոյն յետոյ վառում են և նորապսակները, այլ ևս ոչ ոք։

Երիտասարդները վառած մոմերով վերադառնում են տուն, ուր պատրաստած կան փոքրիկ դէզեր և այդ մոմերով վառում են նորանց. փոքրիկ դէզերը առանց բացառութեան պէտք է լինին իւրաքանչիւր տան տանիքի վերայ։ Վառած դէզի վերայով *լոք* են տալի, այսինքն ցատկում են։ Նորապսակ երիտասարդի բարեկամները բերում են այդ երեկոյին նորահարսի համար տեսակ տեսակ ուտելեղէն, որ կոչւում է *խոնչա*։ Երեկոյեան արձակում են հրացաններ։

Ղազախի գիւղերում դէզը վառւում է միմիայն եկեղեցու մօտ։ Նորա վառելու արտօնութիւնը նոյնպէս տուած է նորա-

պսակ երիտասարդներին, որոնցից յետոյ սակայն՝ կարող է վառել ամեն ոք։ Դէզի ծուխի թեքուիլը նշան է այս կամ այն կողմի բերրիութեան։ Բոցը վերջանալուց յետոյ սկսում են ցատկել վրայով։

Ապա մի մի կիսայրած փայտ դիզից վերցնում տանում են իւրեանց տները և պահում են սպահով տեղ կամ դնում են հաւերի բներում, որպէս զի հաւերը շատ ձու ածեն ու շուտ թուխս գան։ Մի կտոր էլ դնում են խաշի մէջ, որ հացը առատ լինի։

Շիրակում և Բասէնում դէզի վառելու իրաւունքը նոյնպէս տուած է նորապսակներին։ Այնտեղ քաւորակինը հարսի համար բերում է *խոնչա* և հարսին երդիկ է դուրս հանում։

Վաղարշապատ և շրջակայ գիւղերում նորահարս ունեցող տունը հրաւիրում է աղջկունք և հարսներ *ղըրըննըէզի* տօնը կատարելու։ Քաւորը բռնում է նորապսակ տղայի և սա իւր ամուսնու, նորահարսի, ձեռքը և երեքը միասին երեք անգամ պտտում են իւրեանց բոցավառ դէզի շուրջը և երեք անգամ վրայով ցատկում են։

Ապա հրաւիրուած աղջիկները և հարսները դեղ են քսում՝ սևացնում են աչքի թերթևունքները և պարահանդէս բանում։ Տան նորահարսը պարտաւոր է ինքը աչքադեղը մատուցանել և մինչև անգամ ցանկացողին քսել։

Դէզի վրայով ցատկելը նորա համար է՝ որ ազատուին ամէն տեսակ *չլաից* (ոչ լաւ, չար բան)։ Մի քանի օրուայ ծննդից ազատուած կնոջը նոյնպէս թռցնում են դէզի վրայով՝ որ քառասունքից դուրս գայ և չլաւից ազատուի։ Քաւորակինը խոնչա է բերում սանամօր համար և միայն նա ունի իրաւունք նորահարսին դուրս բերելու երդիկ՝ դէզի վերայ։

Դարալագեազի գաղթական ժողովրդի մէջ, օրինակ Ազատէկ, Մարտիրոս, Կորադիզ, Սէս գիւղերում, դէզ վառելու իրաւունքը քահանայից յետոյ յատկացրած է նոյնպէս նորապսակ երիտասարդներին, որոնք, Ջուղայեցւոց նման, վերադառնում են տուն վառած մոմերով իւրեանց դէզերը վառելու։

Երբ քահանան կարդում է աւետարանի այն տեղը, ուր

Սիմէօն ծերունին ասում է Մարիամին «և ընդ քո իսկ անձն անցցէ սուր», իսկոյն իւրաքանչիւր մարդ ծածկաբար կտրում է դանակով մոմի կտորը և մօտը պահում, որ *օձը երբէք չըկծէ նորան*: Նոյն նպատակի համար ամենքը ևս՝ հարս, աղջիկ, կին, տղամարդ, երեխայ, դէզի կրակով այրում են իւրեանց շորի որևէ մասը։ Իսկ Խաչիկ գիւղում այրում են խոնջանի ծայրը։

Եթէ որևէ հիւանդ կայ տանը, նորան *երդիկով դուրս են բերում* տան տանիքը՝ դէզի մօտ, որ լաւանայ։ Դէզը վառելու միջոցին հրացաններ են արձակում, որոնց ձայնից շները վախենում են և մի կողմի վրայ են փախչում։ Փախուստը դէպի որ կողմը կատարուի, այդ տարուայ հողային առատութիւնը այդ կողմից կարելի է սպասել։ Նոյն նշանակութիւնն ունի և դէզի ծխի ուղղութիւնը քամու ազդեցութիւնից։

Բարեկամները նորահարսին դուրս են բերում երդիկ, պտտցնում են դէզի շուրջը և այրում են խոնջանի ծայրը։ Վերջապէս խարոյկից մի կրակ են ձգում տան մէջ *անպատճառ երդիկից*, որով վառում են այդ երեկոյի մոմը, որպէս զի բախտը տան վերայ լինի։

## ՄԵԾ ՊԱՍԸ.

Բասենում մեծ պասի առաջին օրը իւրաքանչիւր տան թխում են *եօթը* հատ ալանի բաղարջ ի նշան եօթը շաբաթի և այդ օրը խաշով հաց չեն ուտում։ Երդիքից կախում են թելով մի սոխ, մէջը ցցած եօթը փետուրը. նա կոչւում է *ախըլուծ*։ Իւրաքանչիւր շաբաթի վերջը մի փետուրը հանում ձգում են։ Փետուրների վերայ դրած մանրիկ քարերը շարժուելուց վայր ընկնելով վախեցնում են երեխանց, որ նոքա ճշտութեամբ պահեն պասը։

Ղազախում նոյնպէս կախում են սոխը փետուրներ ցցած և անուանում են նորան *ալապի ալոր*, որից իւրաքանչիւր շաբաթ մի փետուր ձգում են։ Այդ երկրում մեծ պասի առաջին օրը ընդունում է *կրակի* կիւրակի և ով չընդունի նո-

րան. նորա շորերը շուտ շուտ կ'այրուին. երկրորդ օրը *Ջրհնն է*, չպահողին ջուրը կըտանի։ Երրորդ օրը, մկանն է, մկները կուտեն թեյ, հաց, շոր և այլն։ Այդ օրը, չորեքշաբթի, կանանցից ով չգնայ եկեղեցի և չլսի *առաջին* անգամ ասած «Տէր ամենակալը», նա չի կարող *Ջահրը* (ճախարակ) մանել։ Չորրորդ օրը, հինգշաբթի, առաջին գործը պէտք է լինի ճախարակ մանել, որովհետև նորա մէջ միայն կարելի է գտնել *բարաքեա*, առատութիւն։

Աւելացնեմ այստեղ, որ Ղազախում սովորութիւն է կանանց մէջ, որ ամբողջ տարի չորեքշաբթի և ուրբաթի երեկոյին գործ չպէտք է կատարել, ըստ որում չորեքշաբթի արածը *բարաքեա* չի ունենալ, իսկ ուրբաթն ունի վատ հետեւանք, կրակին զոհ կգնան շոր, կայք, երեխայ և այլն։

Շիրակացիք և Ղարսեցիք մեծ պասի առաջին շաբաթի շաբաթ օրը անուանում են *Թալալօսի կիրակի*, ով չպահի, *կթալկանոյ*, այսինքն նորանց կարծիքով կըցնդի։

Մեծ պասի 24-րդ օրը հինգշաբթի, իբրև մեծ պասի կէսը, կոչւում է *Միջինք*. Դարալագեազի բնիկ հայերի մէջ սովորութիւն կայ, որ մեծ պասի 23-րդ օրը, չորեքշաբթի երեկոյին եկեղեցում շինում են *լիճք*, այն է լագանի մէջ ածում են ջուր և ձէթ ու եղեգնէ խաչի մէջ պատրոյկը լիճքում վառում են մինչ լոյս։ Առաւօտեան լիճքի ջուրը մաս մաս բաժանում են գիւղի բոլոր տների վերայ, ուր այդ ջուրը խառնում են բաղարջ խմորի հետ։

Վաղարշապատի գիւղերում, Հին Ջուղայում, Դարալագեազի բնիկ և գաղթած հայերի մէջ այդ օրը թխում են մի մի հատ մեծ բաղարջ, որ Վաղարշապատում անուանւում է *միջունք*, Դարալագեազի բնիկների մէջ՝ *միջնաբաղջ*, իսկ գաղթածների մէջ՝ *կլօճ*։

Բաղարջի մէջ դնում են ուլունք կամ դրամ և բաժանում են տան բոլոր անդամների վերայ։ Մի քանի տեղ բաժին են հանում նաև անասուններին, հողին և այլն։ Ուլունքը կամ դրամը, որ Խաչիկ գիւղում կոչւում է *դեօվլաթ*, ում բաժնի մէջ դուրս գայ, այն տարուայ առատութիւնը նորա գլխին է։

Ջուղայումը հաւատում են, որ բաղարջը կտրելու ժամանակ ուլունքը կամ դրամը ընկնի կտրող դանակի բերանը, որ նոյն է թէ գութանի խոփը, այն ժամանակ նորանց ապրուստը պէտք է սպասել հողից։

Ձիրակցոց և Բասենցոց մէջ ևս գործադրւում է բաղարջի մէջ *բաղդ* դնելու սովորութիւնը, սակայն նորանցում բաղարջը թխում են դեկտեմբերի վերջին օրը, իսկ բաժանում են Յունուարի Ա-ին, երեկոյին։

*Լիճքը* սովորական է նաև Արարատեան գաւառում և Բասենցոց մէջ, նորանում վառում է 40 պատրոյկ, բայց ջուրը չեն բաժանում։ Երիտասարդ աղջկունք և տղայք հաւաքւում են այս կամ այն բարեկամի տունը, իւրաքանչիւրը նոցանից ժողովում է 40 մանրիկ քարեր ի յիշատակ 40 մանկանց և մի քարի վերայ 40 անգամ ծունր են կրկնում, ուրեմն 1600 ծունր, ուպէս զի 40 մանկանց աղօթքը լինի նորանց վերայ. ծունրի ժամանակ նոքա կրկնում են հետևեալը

Քառսուն մանուկ, քառսուն կուս,
Քառսուն մանկան բարեխօս։

Դարալագեազի գաղթական ժողովրդի մէջ սովորութիւն է որ Գրիգոր Լուսաւորչու օրը (մուտն ի վիրապ) նորահարսի սկեսուրը հրաւիրում է իւր տուն բարեկամ կանանց, հարսնամօրը և սորա բարեկամ կանանց և զանազան ուտելեղէններ պատրաստելով գնում են կանաչազարդ դաշտը զբօսնելու։

Այդ զբօսանքի անունն է *գեաշտ*։ Դորա մասին ասում են հետևեալը։

„Հարսները կնացած է գեաշտ,
Ի՞նչ են բերած, ջուխտ ջուխտ լաշ. (տղայ)
Անուները ինչ.
Մէկին զաննակ, մէկին պամբակ“։

## ԾԱՂԿԱԶԱՐԴ

Ծաղկազարդի տօնը Դարալագեազի գաղթական ժողովրդի մէջ ունի մեծ նշանակութիւն, մանաւանդ երիտասարդ տղայոց և աղջկերանց համար, որ ծաղկազարդի առաւօտ,

եկեղեցում, ամեն մի նշանուած աղջիկ իւր փեսացուի ծնողներից ստանում է զարդարուած մոմ։ Իսկ ժամասացութիւնից յետոյ իւրաքանչիւր նորահարս, այսինքն նոյն տարի պսակուած, *առաջի* անգամ՝ ուղղակի եկեղեցուց գնալու է իւր հօր տունը, իւր ծնողաց մօտ։ Եթէ մէկը վստահանայ ծաղկազարդից առաջ գնալ, այդպիսին անշուշտ կ՚ենթարկուի հասարակաց բամբասանքի։

Վաղարշապատի շրջակայքում հարսի հօրանց տուն գնալու սովորութիւնը երբեմն այնքան խստութեամբ է լինում, որ դժբաղդ դէպքումն անգամ (մահ, ծանր հիւանդութիւն և այլն) նորահարս աղջիկը ստիպուած է լինում գալ հօր տունը՝ միայն գիշերը և նոյն գիշերը վերադառնալ։

Վաղարշապատի շրջակայքում և Ղազախի մի քանի գիւղերում սովորութիւն կար, որ եկեղեցու մէջ, «Փառք ի բարձունս» երգելու միջոցին, պատանի տղայք ածում էին *ճոճանակ* և *ճնո*։

Ճօճանակը ձեռքի թաթի չափ, կոթով մի տախտակ է, որի երկու կողմից թոյլ կապած են մի մի տախտակ և այս տախտակները, շարժելու, ճօճելու ժամանակ զարկւում են միջին տախտակին։ Իսկ ճեռը փայտի փոքրիկ գլան է, վրան փորուած ատամներով, որոնց արանքը փոխ առ փոխ ընկնելով փոքր տախտակի ծայրը՝ պտտեցնելու ժամանակ, ձայն է հանում, *ճռռում է*:

Ծաղկազարդի օրը պատանի տղայքը, Վաղարշապատում, խումբ խումբ պտտւում են տնէտուն, ձեռքներին բռնելով ուռեր, ծայրը օղակացրած, երգում են այս երգը և ժողովում իւրեանց համար ձու։

Անակ անակ ճօճանակ,
Աստծու դուռն բաց անեմ.
Մննեմ մէջը ժամ անեմ.
Դուրս գամ պատարագ անեմ.
Ընկերս ընկաւ ծովը,
Ծովը ծիրանի դառաւ,
Պատերը հայլի դառաւ,
Բօզօն եկաւ կեռ կտուց,

Հաւը տեղից թռցրուց.
Տակիցը մի ձու պլցրուց։

Աշտարակ և շրջակայքում երգում են հետևեալը.

Անակ անակ ճօճանակ,
Աստծոյ դուռը բանանք,
Մտնենք ժամ անենք,
Դուրս գանք պատարագ անենք,
Չալ եզը մորթենք, մատաղ անենք
Պոզերը չարդախ անենք,
Միջին նստենք քեարգահ անենք.
Մատաղը սիրողը երկու ձու տայ,
Զատկին խաղանք քէֆ անենք
Մինն ինձ, մինն իմ ընկերին,
Ով տայ՝ գիզի բարձին նստի,
Ով չտայ՝ չոր քարին նստի։

Կարսից զաղթած ժողովրդի մէջ՝ Ալէքսանդրապօլում, նոյն Ծաղկազարդին երեխայքը ճօճանակ ածելով պտտում են տնէտուն և ժողովում են հաւկիթ ու «հատիկ», որ է խաշած ցորեն, որին երբեմն խառնում են սիսեռ, չամիչ և այլն և երգում են այս երգը։

Ճռռ ճռռ ճռչեռնակ,
Աստծոյ հալալ պիպեռնակ,
Ընկերս ընկաւ ծովը,
Ծովէն ելաւ ծիրանայ,
Խունկ առէք, մոմ առէք,
Տանուտէրը պատարագ արէք,
Իմ կարմիր հաւին հաւկիթը դուրս բերէք,
Ով որ բերէ՝ շէն մնայ,
Ով չբերէ՝ հաւի փորին դէմ կենայ։

Դարալագեազի Խաչիկ գիւղում Ծաղկազարդի պատարագից յետոյ, պատանիները ճեռ և ճօճանակ ածելով շրջում են տները, ձու են ժողովում և երգում են հետևեալը.

Ճրջանակ, անակ անակ,
Կեղեցոյ դուռը բանանք.
Մննենք մէջը աղօթք անենք,
Դուս կանք չալ եզը մատաղ անենք,

Պոզերը չարդախ անենք,
Վրէն պատարագ անենք,
Ժաքուն խրազան անենք,
Չալթուկ թակենք տանք հաւերին,
Հաւերն ինձ մի ձու ձու տայ,
Ձուձուն տանենք տանք պառաւին,
Պառաւն ինձ մի կաթայ տայ,
Կաթէն տանենք տանք խառատին,
Խառատն ինձ մի շիվի տայ,
Շիվին տանենք տանք չօբանին,
Չօբանն ինձ մի գառը տայ.
Գառը տանենք տանք Աստըծուն,
Աստուած ինձ մի աղբէր տայ,
Աղբեր, աղբեր, ջան աղբեր,
Դու բերթի գլխին աղբեր,
Ես բերթի տակին աղբեր.
Հուռում հուռում կանչեցինք,
Հուռումի ձին թամքեցինք
Հուռումը կնաց բանջարի,
Բանջար չիլաւ, խոտ իլաւ,
Խոտի տակին ծիտ ըլաւ,
Ծըլվըլալէն դուս թռաւ,
Հանգիստներին լիս ըլաւ.
Բերէք տուէք մեր երկու ձուն,
Աստուած պահի ձեր հարսնացուն։

Վէդի Բասարի Դաւալու գիւղում, որոնք գաղթած են Մակուից, երեխայքը խմբովին, ձեռներին ուռի ճիւղեր, ծայրերը օղակ շինած, պտտում են տնէ տուն ձու ժողովելու և երգում են.

Կարկաչայ կարինկաչայ.
Սև եղան սև սամաթեր
Կարմիր եղան օղն ու կօճակ,
Ով որ չտայ իմ երկու ձուն,
Մուկն ու կատուն իրանց թթուն,
Ով որ կտայ իմ երկու ձուն՝
Աստուած պահէ իր փեսացուն։

Բասենում երեխայքը նոյն ձևով և ուռի ճիւղի օղակներով պտտում են և ձու ժողովում ու երգում.

Կարկաչայ կարինկաչայ,
Սև եզան սև սամոդայ
Կարմիր կովին եղն ա մօղա.
Ով որ ինձի հաւկիթ կտայ
Աստուած իրեն աւելի տայ։

## ԶԱՏԻԿ

Սուրբ Յարութեան կիրակի օրը շատ եկեղեցիների մօտ ժողովուրդը ընդհանուր հասարակութեամբ *մատաղ* են մորթում և մատաղի միսը բաժանում են հասարակութեան բոլոր անդամներին։ Մատաղը շատ տեղ կոչւում է *ախառ*։

Դարալագեազի Խաչիկ գիւղում մատաղացու կովի կամ եզան ստամոքսը, որ կոչւում է *թափան*, մեծ յարգանք է վայելում հասարակութեան աչքում։ Մատաղ մորթողները իրարից գողանում են թափանը։ Շատ անգամ երեցփոխը ինքն է վերցնում նորան իւրեան համար, կամ տալիս է իւր սիրելի մարդուն։ Բաղդաւոր է այն տունը, որ այս կամ այն ճանապարհով ձեռք է բերել թափանը։ Եթէ նորանից սերէք (կճուճի բերանացու) շինեն և ծածկեն պղուղի կամ խնոցու բերանը, իսկոյն իւղի քանակութիւնը կըշատանայ և դորա հակառակ ուրիշներինը կըքչանայ։

Որպէս զի այդպիսի զրկանք չլինի գիւղում ոչ ոքի և ոչ ոք էլ ի վնաս միւսների չհարստանայ իւղով, այլ քրիստոնէաբար ամէնքն էլ հաւասար լինին, կարգադրուած է յիշեալ գիւղում, որ թափանը հանեն, խորովեն և հրապարակով ամէնքն էլ ուտեն։ Այդպէս են կարգադրել գիւղի խորագէտ և քաջիմաստ մարդիկ։

Հին Ջուղայում Զատկի առաւօտ, ժամում երբ սկսում են «Փառք ի բարձունս» իւրաքանչիւր սանահայր իւր կնքաւորին անպատճառ մատուցանում է 20—30 կարմիր ներկած ձու և մի խաչաձև մոմ կոթը ամրացրած մի ձուի վերայ ու խաչի թևերը վառած։ Մոմերի բազմութիւնից գիւղական անշուք եկեղեցին յանկարծ լուսաւորւում է։

Բասենումը մոմ են մատուցանում եկեղեցու մէջ քաւորակինը՝ իւր սանամօրը, իսկ սկեսուրը՝ իւր հարսնացուին։

Վաղարշապատի շրջակայքում, Զատկի կիրակի օրը, տղայոց խումբը պտտւում է տնէ տուն, ձու է ժողովում և երգում է հետևեալ երկու երգը.

Ճրագ, ճրագ ճշմարիտ,
Ճշմախոտիկ Մարտիրոս,
Մեր սիրելի Քրիստոս,
Քրիստոս գնաց Հնդու քաղաք,
Բերեց անթառամ ծաղիկ,
Դրեց Մարիամի գլխին.
Մարիամ, Մարիամ, դու կոյս ես,
Հոգով մարմնով յույս ես
Ըթամ դադեմ բարութիւն
Հոգլս տանես արքայութիւն։

Միւս երգն այս է.

Ճրագ, ճրագ ճշմարիտ,
Ճշմարիտ է Մարգարիտ,
Անմահական բանալիք,
Տար դրախտի դուռը բաց.
Քաղի անթառամ ծաղիկ,
Բեր դիր գլխիս տակ,
Քնեմ քունս տանի,
Վեր կենամ երազս բարի.
Ինչ խնդրեմ՝ Տէրը կատարի.
Երկնքի դուռը բաց ա,
Ոսկէ աթոռը դրած ա,
Քրիստոս վրէն նստած ա,
Ոսկէ գրիչ բռնած ա.
Լուսաւորիչ կանգնած ա.
Մեծ ու պստիկ գրում էին,
Արդարներն խաղում էին,
Մեղաւորներն լալում էին։

Խարալագեազի պարսկահայ գաղթականների մէջ սովորութիւն է, որ սուրբ Աստուածածնի աւետման առաջին երեկոյին, չորեքշաբթի, կանանցից ոմանք եկեղեցուց դուրս գալով, բոլորովին լուռ և իրարից ծածուկ գնում են մօտակայ առուն, ջուր են առնում փոքրիկ ամանի մէջ, հետո էլ երկու երեք

մանր աւազ և եթէ կայ՝ ծաղիկ ևս և ամանի բերանը ամուր կապած պահում են և հարկաւոր ժամանակ խառնում են պանրի մային, որ պանիր շատ լինի. անում են խնոցու մէջ՝ որ իւղը շատ լինի։

## ՀԱՄԲԱՐՁՈՒՄ

Ահա մի տօն, որ ունի բուն ժողովրդական բնաւորութիւն. Քրիստոսի ծննդից մինչև Համբարձում, ինչպէս տեսանք վերև, բոլոր երգերն ու սովորութիւններն ունին բստ մեծի մասին կրօնական բնաւորութիւն.

Համբարձման տօնը զարմանալի ընդհանրացած է Հայ ժողովրդի մէջ և թէպէտ կատարւում է Քրիստոսի համբարձման օրը, բայց տօնակատարութիւնը ամենևին կապ չունի համբարձման հետ։ Չեռու ամէն կրօնական զգացմունքներից՝ ժողովուրդը անձնատուր է սիրոյ զգացումներին, ինչպէս տեսնում ենք «Ջան գիւլումի» մէջ։

Ջան գիւլումի տօնը պատկանում է միայն կանանց սեռին, նորանք են կատարում ու նորանց երիտասարդ հարսներն ու աղջիկներն են գլխաւոր տօնակատարները։ Երևում է որ «ջան գիւլում» բանաստեղծութիւնը կանանց հեղինակութիւնն է։

Շարուրի հայ գիւղերում (Ուլիա, Նորաշէն), Երևանում և այլ տեղեր զատկից մինչև համբարձումը կանայք երեկոները կար, գործ և սորա նման զբաղմունք չեն կատարում, որպէս զի „հաւկուր“ չլինին։ Համբարձման երեկոյին հաւկուրը շրջում են — «հաւկուրը շուռ են տալի» — այսինքն վիճակ ձգելու առարկաները (մատանի, դանակ, կօճակ, մատնոց և այլն) որ ջան գիւլումի ծաղիկների հետ միասին լինում են պղուղի մէջ, թափում են մաղի կամ այլ բաց ամանի մէջ և ասում այս խօսքերը.

„Ըսկլա, ըսկլա պատին տամ,
Հաւկուրը, շուռ տամ,
Վախում եմ քնեմ քունս տանի,
Ընկորս տանուլ տամ“։

Նոյն Շիրակի հայ գիւղերում զատկից մինչև համբարձում *կաթնապուր* չեն եփում, որպէս զի կովերի կաթը չպակասի։ Բայց համբարձման կիրակի օրը կաթնապուր եփելը իւրաքանչիւր տան համար անհրաժեշտ է։

Համբարձման նախընթաց օրը արդէն պատրաստութիւն են տեսնում հարսները և աղջկերքը, որ միւս օրը ջան գիւլումը պատրաստ լինի։ Դորա համար նորանք քաղում են զանազան ծաղիկներ, դնում են մի պղուղի մէջ, ուրածում են և աղբիւրի ջուր։ Այդ պղուղի մէջն են դնում նաև վիճակ հանելի առարկաներ, ով ինչ կամենայ, մատնոց, մատանի, դանակ, ուլունք և այլն։ Ապա աշխատում են որ այնպէս թագցնեն պղուղը, որ տղայքը չգողանան։

Կիրակի առաւօտը աղջիկները դնում են միասին դաշտ ջան գիւլումի համար ծաղիկ քաղելու և փնջելու, որի ժամանակ երգում են այս.

Քնացի ծաղկի,
Վեցայ մասս ծակի,
Հարսներին քաղել տուի,
Մոնթերին փնջել տուի.
Գերին փայ անել տուի,
Կզրի փայը կտերը,
Ծլվըլալայ ծտերը.
Տիւս պի մի թեփշի նուռը,
Որ չգնամ ես խանի դուռը։

Շիրակի հայ գիւղերում այդ երեկոյին շատերը աշխատում են փորձել իւրեանց բաղդը «վիճակի ջրի» վերայ։ Երկու երիտասարդ հայս, որոնք *անպայման* պէտք է լինին ծնողաց անդրանիկները, պղուղից ջուր են ածում ֆինջանի մէջ, որ կոչւում է *վիճակի ջուր* և երկու հարսը ձեռքերի միայն մեծ (բոյթ) մատերի վերայ պահում են ֆինջանը։ Բաղդ փորձողը մատը մօտեցնում՝ կպցնում է ֆինջանի շրթունքին ու իւր մտքում մի խորհուրդ է խորհում։ Եթէ խորհուրդը կատարուելու է, ֆինջանը պտտւում է աջ կողմի վերայ, եթէ չէ կատարուելու, շրջւում է ձախ կողմի վերայ։

Հետևեալ օրը, այն է համբարձման օրը հարսները և աղջիկները միասին գնում են դաշտ, այգի, կամ այլ տեղ, ուր յարմար է, զբօսնում են, ուտում են տարածները, ուրախանում են, երգում, և ապա մի յարմարին տեղում խմբւում են ու սկսում ջան գիւլում երգն ասել մի մի տուն։

Մի փոքրիկ աղջիկ, երեսը անթափանց քողով ծածկած, նստացնում են խմբի մէջ տեղը և վիճակի պղուղը տալիս են ձեռքը, որ հարկաւոր ժամանակ մատով հանում է պղուղի միջից մի առարկայ։

Երգիչ հարսները և աղջիկները երկու խմբի են բաժանւում։ Առաջին խումբը անշուշտ երգ գիտեցողներ, ասում է իսկական երգի խօսքերը, որ կազմում են չորս տող, իսկ միւս խումբը, առաջինից յետոյ, կրկնում է միայն ջան գիւլում ջան, ջան։ Երգի տները, առանց հետևողութեան ասում են, որը մտներն է ընկնում և ասելուց յետոյ վիճակահան փոքրիկ աղջիկը պղուղի միջից հանում է ձեռքն ընկած մի առարկայ։ Վերջինը ում պատկանում է, արտասանած երգն էլ, լաւ կամ վատ, Նորա տիրոջը կրվերաբերի։

Այժմ յիշատակեմ այն երգերը, որոնք երգւում են զանազան հայ կետրոններում։

*Շիրակ եւ Բասեն.*

1. Ղարսայ բերդը պլել է,
   Իմ եարս մէջը քնել է,
   Ձէն տուի ձէնս չառաւ,
   Մազար ինձէն ջորեր է։
2. Տեղ եմ գցել փոնթ կը տայ
   Բարձի տակէն հոտ կգայ
   Մեռնեմ դաստայ քոնքուլիդ,
   Մէջէն խնկի հոտ կգայ։
3. Իմ եարն եկաւ ու գնաց,
   Սարին դէմ առաւ մնաց.
   Սրտով իլղար (հաճութիւն) չտուեց
   Սրտիս դարդ եղաւ մնաց։
4. Երւլիկներ բուն եմ դրել,
   Հօրս մօրս քուն եմ դրել,

Աղջիկ եարիս հաւասից,
Ամեն բան տուն եմ դրել։

5. Աղջի, գնա կալը տես,
Պաղ աղբըրին սալը տես.
Պաղ աղբըրէն ջուր խմէ՝
Որի սրտիս հալը տես։

6. Ջաղցի դռներ տաշած են,
Ունքեր ղալմով քաշած են
Ղալամն ինչ է, թուղթն ինչ է
Լուսնի լուսով նախշած են։

7. Աղջի, կապէ քո ոսկին,
Ականջ մի մորդ խօսքին.
Գլուխս դիր գլխիդ դէմ
Նահլատ տուր հօրդ ազգին։

8. Բոստան եմ ցանէ համեմ,
Խուրմա տուէք որ ծամեմ.
Խուրմանի առայ ու պահի,
Կարօտ եարիս կը տանեմ։

9. Չայիր եմ զարկել դարին,
Վազա եմ կարի տարին,
Ինձի տուէք էն աղջիկ,
Չքաշէմ ախ ու զարիկ...

10. Ջրի եկար ու գացիր,
Սիրուն երեսդ չբացիր.
Սև աչքերով, վառ թշով
Ինձ էրէցիր, վառեցիր։

11. Բոստան եմ ցանած բազուկ,
Իմ եարն էր քեզմէն նազուկ,
Թէ որ էնոր չէք ճանչէ,
Թևին ունի բիլազուկ (ապարանջան)

12. Ծառ մը ունիմ ծիրանի.
Քամին տերև կը տանի.
Տերև ինձմէն արի տար
Իմ եարոջս մատանի։

13. Դալուբաբէն ամպել է,
Ծէկ եարը ձին թամքել է.
Հեծնի ջրիթ խաղցել է՝
Ընձրև էկի թացուել է։

14 Կրակն արա մահանայ,
Արի մեր տուն ու գնայ.
Մէջ զամ էլ վրաս աշէ՝
Դունիան քեզի չի մնայ։

15. Ղաշղա բուռակ հեծեր եմ,
Արազին մօտեցեր եմ,
Արազ, Արազ, խան Արազ,
Խաներու սուլթան Արազ։

16. Կողբայ քարերն աղի է,
Մազերդ շաչբաղի է,
Կողբայ միջի մադանը,
Իմ եար քեզի բադանը։

17. Ծառի տակը կեցել եմ
Անթարխս լուացել եմ.
Ծառի տակը երկու ղոչ,
Մինը փնչեր, մինը ոչ։

18. Աղջի անունդ Մահի,
Ճակատդ բոլոր շահի,
Թէ որ ինձի կը հաւնիս,
Աստուած աղբերդ պահի

19. Այ տղայ եզնարած ես,
Դու ջանէդ բեզարած ես,
Քու հերուայ բլբուլ լեզուդ.
Էս տարի լալ է դառի։

20. Նախրգնին ուռի ծառ,
Խնձոր գցեմ շարի տար.
Ուրբաթ, շաբաթ քեզ մօհլաթ,
Գալ կիրակի արի տար։

21. Խնացի չայ վլածք
Տաշտը կոտրաւ ջուրը գնաց.
Ջուրն առայ ելայ դարը
Չգտայ իմ փիդան եարը։

22. Աղջի շամամ ծծերդ
Թողնես բանամ ծծերդ,
Ինքն իրեն խշխշում է
Սպիտակ քաղամ ծծերդ։

23. Գնա գնա Գետիդ եմ
Ալ խնձոր եմ, պստիդ եմ,

Ինձի էստեղ չթողնես,
Ուր տեղ էրթաս մօտլիդ եմ։

24. Ջրի միջի ջլախոտ
Ընուշ կգայ եարոտ հոտ,
Տեղ մը երթաս՝ թէզ դարի,
Սիրտս կեղնի արիւնոտ։

25. Բասմա չափար մի կոխի,
Խօսքը իմս է, մի վախի,
Ուրտեղ երթաս կուզեմ քեզ,
Տուած խօսքդ մի փոխի։

26. Ջուրը կապել եմ առուներ,
Գրող տանէ պառւըներ,
Դրանք ինչ բանի պետք են՝
Աստուած պահի աղջիկներ։

27. Վարդ եմ քաղի մաղերով.
Վեր եմ դրել շաղերով.
Հրէս եկաւ իմ եարը,
Ալ ձին տակին խաղալով։

28. Դուն ելել ես կերթաս բեր *)
Ոչ բէրն եղնի, ոչ բէրստէր.
Խէր չտեսնի քո հէրն ու մէր՝
Ինձի չանէր էս դարդին տէր։

29. Սանդնելէս բախայ բախայ
Սև չուխա կարմիր եախա,
Քանի դու հեռու մնաս,
Իմ կեանքս ախ ու վախ ա։

30. Ծառի տակը դալդա է,
Քանի կանգնես՝ ֆայդա է.
Ծառի տակը փորել եմ,
Ոսկիքս մէջը հորել եմ։

31. Ջուրը կապէ ադլստան,
Աստուած պահէ գեաղեստան,
Գնա, եայլէն արտ ունիս,
Հազար ու մի դարդ ունիս

32. Սիւն ու գերան բար պիտէր,
Սրտով սիրով եար պիտէր.

*) Ոչխար կթելու տեղը։

Թուխ փուշին*) վզիս կապող
Ճէկ ու կարմիր եար պխոէր։

33. Երխալուղդ կարել եմ,
Դօշիդ կօճակ շարել եմ.
Արխալուղ բոյիդ կիսուն
Կոճակներ հարիւր յիսուն։

34 Այս գիշեր ես դուրս ելայ,
Լուսինն անուշ կըցոլայ,
Կցոլայ Ջալուայ սարին,
Ակաթէ մառմառ քարին։

35. Լուսինն էր Բագին ոլոր,
Ջամ խորոտիկ, համ բոլոր,
Լուսնիակ կամար կամար,
Ես մեռնեմ քեզի համար։

36. Կանանչ կանանչ կանչեցէք,
Կանանչ մէյդան բացեցէք,
Ջարսն ու աղջիկ դուրս կգան,
Պար ու սէյրան բացեցէք։

37. Ջուր թռաւ թառն ելաւ,
Իմ բանս դաւով ելաւ,
Սաբաբի որդին մեռնէր
Դուշմանի սրտով ելաւ։

38. Էս գիշեր լուսնեակ գիշեր,
Սև աչքեր կարմիր թշեր,
Աղջիկ ապրի աղբերդ,
Դաստուր**) տուր գամ էս գիշեր

39. Մուղնուայ ջուրը սառն է,
Մուղնի երթող իմ եարն է.
Երթայ իր մուրազն առնէ,
Դառնայ իր սիրածն առնէ։

40. Մատիդ մատնիք մաւի է.
Աղջի էդ ինչ դաւի է.
Սէրն ինչ է, սաւդէն ինչ է,
Էս պարի ղայդէն ինչ է։

41. Կաղզուանի ձորէն եմ,
Մեծ բաղի խնձորէն եմ.

*) Մետաքսէ թաշկինակ։ **) Իրաւունք։

Դլար դլար կորել եմ՝
Եարոջմէնէն ջորեր եմ։

42. Աղջի անունդ Ծուշան,
Որի երթանք սուրբ Նշան,
Թէ որ ինձի խօսք կը տաս՝
Մատանիս տամ քեզ Նշան։

43. Կողբայ քարը ղօշա է,
Միջի մարդը բօշա է,
Մաշիք տուէք դուրս ելնեմ,
Ինձի չասեն բօշա է։

44. Ղօշա փանքի դշերը,
Մեր քեաբուբի շշելը,
Ձիթ ալաջայ քո բընդեր,
Ինձ երեցին քո գնդեր։

45. Կանանչ արտի քեանարը,
Ո՞վ է տեսել իմ եարը,
Արտի քեանարը կանաչ է,
Իմ եարը քեզ ճանանչ է։

46. Գինի գինի գինդստան,
Եար մը ունիմ Հնդստան.
Մանր հրնկի շարող էր,
Թաւդայ շապիկ կարող էր։

47. Մաճկալը կայնէ մաճին,
Ոսկէ գնդեր անկջին,
Խաբար սարէք գոքանչիս,
Որ գայ մեռնի կորճին։

48. Մեր դրան սուրու ղազեր
Իմ եարոջ շէկիկ մազեր,
Իմ եարօջ դեօշի ալը՝
Ինչ կենեմ դունիէի մալը։

49. Ես աղջիկ եմ, ալլու եմ,
Նշանլու եմ, բեալլու եմ,
Երբ որ գացի ան տունը,
Ամենիցն էլ բալլու եմ։

50. Գերի եղայ աչքերուդ,
Կամարակապ ընքերուդ,
Էսէնց անգութ սիրտ ունիս,
Որ չես ճանչնայ ընկերիդ։

51. Իմ եարը հանդին տեսայ,
Ջրերի բանդին տեսայ,
Օրդակ պիտէր, բադ պիտէր,
Ջրերի գլխին բանդ պիտէր։

52. Սռուէ առու եմ թափել,
Քառսուն կաքաւ եմ բռնել,
Քառսուն կաքաւ միատեղ
Եարիս փեշքաշ եմ ղրկել։

53. Խմել եմ խոշ եմ եղի,
Սիրուդ սարխոշ եմ եղի,
Հնդստանու բերէք հունդ,
Իմ եարիս բերէք տուն։

54. Այլչի մապերդ իլվանի,
Քամին թել թել կը տանի,
Էդ քո շող շող երեսդ
Ձուստով հոգիս կհանի։

55. Արտերն ամեն բիար է,
Իմ եար թամա խիար է,
Արտերն ամեն խճերով՝
Իմ եարը նախշուն բճերով (գուլպա)։

56. Ջուր չէր ջրիլ ծառները,
Գիր չէր գրի ձեռները,
Խաբար տարէք Նազօին,
Անուշ պահէ գառները։

57. Տարին տասներկու ամիս
Խնձորն է թռմի գոտիս,
Քեաշկա բալուլ մեռնէի
Եար քո մտքէն չելնէի։

58 Էս օր մութ ու լուս կենէ,
Տոնտէր եկէր դուրս կենէ,
Ով որ չիգայ իդա պար՝
Մեռնի իւր եար, կտրի ճար։

59. Արևն առի փռուել է,
Ալ փաս գլխին ծռուել է,
Ով որ տռնի իմ սիրած՝
Թագը գլխէն չվելած։

60. Արի երթանք մեր վանքը,
Դու քանդեր ես իմ կեանքը,

Թէ որ խօսքս չը լսես,
Վերջս կեղնի Թուանքը։

61. Սարեկները եկել են,
Բերդի բոլոր բռնել են,
Բերդի բոլոր ծիլ ունիմ՝
Ու աբրեշում թել ունիմ։

62. Արփաչայի հանդերը,
Ջուրը քանդի բանդերը.
Ոնտէր մնան փոշտերը՝
Եր ու իւրդս քանդել է։

63. Այ արխումը, արխումը,
Դու կայնել ես չարխումը,
Գլուխս գլխիդ ղուրբան,
Ջան մարդ կայնի խալխումը։

64. Ջաղացս ման եմ տուի,
Սիրել եմ ջան եմ տուի,
Ջաղցի քարեր մանրատաշ,
Սիրտս եղաւ հալ ու մաշ։

65. Էս օր արև պատել է.
Իմ եարն ինձի ատել է,
Եար, կանչէ. ձէնիդ մեռնեմ,
Մեր ու ինձ ազատել է։

66. Աղբիւր բացի ջուրն անուշ,
Ծաղկներու հոտն անուշ,
Բոբոջիս Թալին Թագա
Աղջի, իմ եարը քեզ մագա։

67. Ջուրը կիջնէր էն սարէն,
Խթափթփէր էն քարէն,
Չէ սաղցել սրտիս եարէն,
Որ դարձար քո իլղարէն։

68. Երկան քս աղի վերայ,
Ճամամս Թաղի վերայ,
Կարմիր վարդ, ալ ծաղիկ,
Մանիշակ մաղի վերայ։

69. Արխալուղդ կարել եմ,
Կոճկըները շարել եմ,
Ճան տղայ, գնա, կորի,
Քեզնից լաւը ճարել եմ։

70 Որեւն արի կամփընոց
Կանփի թուփը երեսնոց,
Թոն (անձրեւ) եկել է, թուջել է,
Քանդէ կօճակ, գամ քո ծոց։

*Ղազախի Ուզունթալայ գիւղում:*

71. Ա սղայ, քեզ ջրումը սէր ընկայ,
Քարով տուիր, վեր ընկայ,
Ոնչքս որ աչքիդ կպաւ,
Օխտը կուճակ մեր ընկայ։

7!. Բաղումս կայ մի նռնի,
Բարձ պի էք աղէն կռնի,
Աղայ գլխիդ, արեւիդ մատաղ,
Իմ եարի խոսքը բռնի։

73. Քոլերսը վել հանդեր ա,
Թուանքդ լիքը բանդեր ա,
Ա տղայ գնա, շուտ արի,
Քիթը կալած անդէր ա։

74. Գեանջայ քամրն կեալիս ա,
Դուռը շողշող տալիս ա,
Աղջի, վեր կաց, դուռը բաց
Գլխիդ տէրը գալիս ա։

75. Ոյ տղայ, տղայ, ետ գնա,
Ուռաջովդ գետ գնայ,
Շիրվանի քամին փչի,
Գեանջու շալդ ետ գնայ։

76. [illegible]ն եմ ուզում, հիւն բերէք,
Դաղստանայ ձիւն բերէք,
Էլս, գիւնս թամամ ա,
Ղարիբ ղուշս տուն բերէք։

77. Մեր տան քամակը գարի,
Աստուած տայ նանիս բարի,
Որ սրտիս ուզածի պէս
Ինձ ուզեց նազլու եարի։

78. Ջղացիս դուռը փու ա,
Քար կգցեմ կխօսայ
Աստուած սիրող բան չասի,
Ջան աղջիկ ա, ափսոս ա։

79. Այ տղայ, դու ալին տղայ,
Բեանքիւլդ ղալին տղայ.
Ես քեզ որ տեղ սիրեցի,
Հերանցս կալին, տղայ։

80. Թող իմ եարս եար ըլի.
Դարդիցս խաբարդար ըլի,
Թեկուզ որ սիրուն չըլի,
Խօսքերը շաքար բար ըլի։

81. Հաց եմ թխել գաթացու,
Իմ եարը մելիքացու,
Մելիք սարերը շուռ գայ,
Բարով իմ եարը տուն գայ։

82. Ալիր եմ աղել կեարի ա,
Իմ եարս սաֆարի ա,
Եար, քու սաֆարին մատաղ.
Խօսքերդ շաքարի ա։

83. Դու նստել ես գերանին,
Ոսկէ շվին բերանին.
Ոսկէ ղայթան եմ կեօրծել,
Դնեմ ջրիդ բերանին։

84. Գութանս ռաքերումը,
Իմ եարս ձեռքերումը,
Գլուխս ղուրբան տամ,
Մի մանգալ շոքերումը։

85. Ձիրուայ գղալ Ձիրվանի,
Քամին տայ թել թել տանի.
Իմ եարը սարում ձորում,
Իմ քունը ոնց կտանի։

86. Մտիկ արէք էն ղազին,
Պտպտուրիկ բողազին,
Հողն էն հօրն ու մօր գլխին.
Աղջիկ տուաւ չօլմազին։

87. Այ հեւայ հեւայ սիրտս,
Ծիրանի թել ա սիրտս,
Ախ, ինչ ասեմ քեզ, նանի,
Բաց անեմ՝ սեւ ա սիրտս։

88 Կաղնել ես սըւիջհովին,
Քամին տայ դեօշիդ մովին,

Էռնակ ծոցիդ քնողին,
Ձամամ ծծերդ բռնողին։

89. Գիւլում ղիւլում գիլասար,
Բուրդ եմ մանել հաւասար,
Էռնակ կտամ էն օրին,
Որ եկար հետս խօսար։

90. Մեր բաղումը կանանչի,
Ձև կայ շևի նման չի,
Ջարսն ու աղջիկ շատ տեսայ՝
Մինն իմ եարի նման չի։

91. Ղասումը, հա՜յ Ղասումը.
Կարմիր գինին Թասումը,
Տղերքը Երբ կ'ոտորուեն,
Վարդիվերի պասումը։

92. Ղասումը, հա՜յ Ղասումը,
Կարմիր գինին Թասումը
Աղջկերքը Երբ կտաքրանան,
Վարդիվերի պասումը։

*Դարալագեազի Խաչիկ գիւղում:*

93. Ճոշ թող ես արել լծի,
Դունջակ ես արել, կծի,
Իմ հէրը քեզ աղջիկ չի տայ,
Քարէն վեր ընկի պրծի։

94. Ջրի ճամբէն սառել ա,
Մաճը բուռը տարել ա,
Կաքաւ պոչիկ Թուխ տղայ,
Ուշ ու խելքս տարել ա։

95. Ես մի պճուրիկ տօխ եմ,
Ձուշի ղալին կկոխեմ,
Ես էն եարին հաւան չեմ,
Ուրիշ եարի կփոխեմ։

96. Ուռի ծառին հով քամի,
Ձիրվանիդ քամին տանի,
Ես դու գնանք դատաստան,
Ում ղսմաթն է՝ էն տանի։

97. Ես Ըղէքայ ձորէն եմ,
Ալմալայ խնձորէն եմ,

Խաբար տարէք իմ նանին,
Իլում իլում կորել եմ.

98. Սարը ձիւնը կալել ա,
Ընձրև արել հալել ա,
Խաբար տարէք իմ նանին,
Սիրտս վարամ կալել ա։

99. Երկանքն ա աղի վրէն,
Խիարն ա թաղի վրէն
Ես մի թառլան դուշ պտի,
Իմ հօրանց բաղի վրէն։

100. Իմ ծաղիկս քաղած ա,
Տեփրի տակին պահած ա.
Ով որ ծաղկիս դաստ անի.
Հէրն ու մէրը թաղած ա

101. Ա տղայ, անունդ Ուռուշան,
Սպիտակ կուլիդ թուխ նշան.
Եայլուխդ դարկի նախշեմ,
Դարկեմ քո եարիդ նշան։

*Դարալագեազի գաղթական հայերի մէջ, Ազատան գիւղ։*

102. Ոչխարը փռուե դուզը.
Ջոկէք իմ ալագեօզը,
Մէջկէն քաշէք եայլըղը,
Սրփէք երեսի թօզը։

103 Սղբէր ունիմ, աֆչի ի,
Բարակ մէջքը ղամչի ի,
Ձեռիցը մի բան չի կայ
Լեզուիցը թալանչի ի։

104. Մի ծառ ունեմ ծիրանի.
Քամին թել թել կտանի,
Դրես երեսի կառնի,
Ինչ խամեղ քուն կտանի։

105. Եարիս խալաւ կեխտոտի,
Որ կեխտը ջանը չուտի,
Վարդի ջրով լուացի՛
Բերնի գոլով չորցուցի։

106. Կարմիր խնձոր կըծած ի,
Արծթի մէջ բռնած ի.

Աղբէրս եկաւ չտուիմ,
Նարս եկաւ բաշխեցիմ։

107. Ժամտան ետև խինած է,
Խինածը խատխտած է,
Ճիլա շապիկ փռած է,
Օղակ կօճակ շարած է։

108. Գետերն եկա՝ ալաշայ,
Երկու խնձոր մի մէշայ.
Մելիք, տեսէք ով եկաւ,
Եկաւ Նարգիզ, բանաւշա (մանուշակ)։

109. Աղբէրս ծառի տակը,
Թամբուրանի թևի տակը,
Աղբէրս հիվ է դարձէ,
Լեզուն բլբուլ է դարձէ։

110. Լուսնակ է ամբի տակը,
Ես իմ քո կնդի փակը,
Ես քէ վեարդի սիրայիմ՝
Միակի քօլի տակը։

111. Սարերը ձնոտիր է,
Քեալերը (գոմէշ) քնոտիր է,
Աղբէրս բաղի մէջը
Ոտներն է շաղի մէջը։

112. Նախրի ջաղա խնկի ծառ,
Խնձոր թալեմ եարի սար
Ուրբաթ շաբաթ քէ մօլլաթ,
Լոս կիրակի եարի տար։

113. Ամբեր է ձիւն չի գալի,
Իմ եարը տուն չի գալի.
Գլուխս դրի բարձը,
Աչքերս քուն չի գալի։

114. Իմ խօր տախտըշէն տալստ է,
Գարուն կիկայ կծաղկի,
Աչուկ վիմ աղբօր իկեալը
Կանանչ վարդեր կթաղկի։

115. Բաղի երգը ղամիշ է,
Մէջը լինքը եմիշ է,
Աղջիկ. խաթրդ չի մնայ
Նազլուն քեանց քէ անուշ է։

116. Տնիսի վըրայ քնող լաճ,
Բէյխաբար քնող լաճ,
Տարան քո նշանցուդ՝
Ծէլխաբար քնող լաճ։

117. Տղայ, տղայ, խաս տղայ,
Աղջկանց ետևէն վազ, տղայ,
Էյա չեսնա (չես կարող) կոխել
Խոնջանլու կուի, տղայ։

## ՎԱՐԴԱՎԱՌ.

Ղազախի Ուզունթալա գիւղում վարդավառի կամ նորանց բառբառով «վիճակի»-ի օրը հարսները և աղջիկները գնում են զբօսնելու իւրեանց բարձրադիր ամարանոցում, Դամբլուտի սարում, ճլորթի են խաղում և այլն։ Գիւղի հասարակութեան մի մասը, միւս գիւղերի բնակիչների հետ, մատաղներով գընում է գիւղից երեք վերստ հեռաւորութեամբ, անտառի մէջ մի բարձր ժայռի գլխին կանգնած «Սրուէղ» անուն վանքը՝ ուխտի։

Տաւարածները Դամբլուտի սարում այդ օրը ծաղիկ են քաղում գոյնզգոյն, փնջում են խաչաձև և կապում են իւրաքանչիւր տան մի կթան կովի ճակատին մի ծաղկախաչ։ Գեղեցիկ տեսարան է երբ ճակատները զարդարուն կովերը հպարտ քայլերով յառաջ են գնում դէպի իւրեանց տիրոջ վրանները, և նորանց ընդառաջ են դուրս գալի գիւղիս երեխայքը և երգում են հետևեալը։

Էկան, ական, ակաև ի կովին,
Չալ չալ աչքեր բախրի (եղջերու) կովին,
Ես քէ մատաղ, Սուրբ Ուհանէս,
Ամէն բուգիւ (եյեկոյ) իմն ըկանես,
Մատաղ անեմ զաբուլ կանես,
Քօլուղինը քարնըր անես՝
Իմն ալաքսըոր անես։

Ճամախի գաւառի հայ գիւղերում, օրինակ Գիլդա, Հըն-դար, Գիւրջուան և այլն, այդ օրը աղջկունք ժողովում են

ծաղիկ, փնջիկներ են շինում նորանից և այդ ծաղիկը կոչւում է նորանցում *Համբարձում*, և փոքր աղջկայ ձեռքով բաժանում են գիւղի տներին և փոխարէն ստանում են իւղ, ձու, բրինձ և այլ ուտելեղէն։

Ապա հաւաքւում են դաշտ, ընկոյզի ծառերի տակ, զբօսնում են, երգում են, զուռնայով պարում են, ժողոված ուտելեղէնը վայելում են. որոնց մասնակցում են և հասակակից տղայք։

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԿԵԱՆՔ ԵՒ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՆԵՐ

### ՀԱՐՍԱՆԻՔ.

Ահա մի հանդէս, որ կատարւում է մեծ շքեղութեամբ և որին գիւղերում մասնակցում են ոչ միայն հարսի ու փեսայի ազգականները, այլ և ամբողջ հասարակութեան անդամները։ Պարսկահայ և Տաճկահայ գաղթականների մէջ մեծ շքեղութեամբ է կատարւում այս հանդէսը։

Ինչպէս յայտնի է, ամենից առաջ կատարւում է նշանադրութիւնը։ Սովորաբար տղայի ծնողները և ազգականները որոնում են յարմար հարսնացու լաւ դերդաստանից։ Ձիրակում, Բասենում և Կարսում աղջկայ հայրը եթէ իւր աղջիկը հարսնութեան տալու նպատակ ունի՝ պատասխանում է «ժամանակդ կրկնէ, մինչև մեր տանը խորհուրդ կանենք», իսկ եթէ տալու միտք չունի, պատասխանում է, «կորուստդ մեր տանը չէ, ղսմաթդ Աստծուց ուզէ»։

Պատահում է որ հայրը կամենալով իւր աղջիկը հարսնութեան տալ օտար գիւղ, կանխօրէն վերաստուգում է տղայի կարողութիւնը, տունը, գոմն, ապրանքը, ապրուստը և այլն։ Վերաստուգելուց յետոյ համաձայնում է նստել, բարեկամանալ, հիւրասիրուել և ստանալ փեսայի ծնողներից ընծայ, մահուդ, ձի, ատրճանակ կամ մի այլ պարգև, որ երբեմն նորից վերադարձնում է իւր փեսային, համբուրելով. նորա ձեռը։ Այս ընծան կոչւում է *տնտեսութեան խալաթ* (տուն տեսնելու։)

Նշանադրութեան օրը փեսային տանում են հարսի տունը, հետն էլ զանազան ուտելիքներ։ Այդ տեղ հրաւիրւում են բարեկամները, դրացիները և ծխատէր քահանան, որ ընթրիքից առաջ փեսայի հետ առանձնանում է կանանց սենեակը և հարսնացուին փեսայի դէմ կանգնացնելով հարցնում է, նախ առաջինի և ապա երկրորդի համաձայնութիւնը, որ արտայայտւում է գլուխ խոնարհացնելով և ապա տղան մատանին հագցնում է աղջկայ մատին և *չարղաթը* ձգում է նրա գլխին, իսկ շրջապատողները կոչում են «Աստուած շնորհաւոր անի»։

Եթէ նշանադրութիւնը վերջանալուց յետոյ գոքանչը իր մօտ չպահի փեսային, սա իսկոյն և եթ պէտք է վերադառնայ իրենց տունը։ Նշանադրութեան հանդէսը կոչւում է *նշան*։

Հետևեալ օրը աղջկայ հայրը *յարգի* է հրաւիրում, այսինքն հացկերութեան է հրաւիրում բարեկամներին և նոցա ներկայութեամբ մինը կանգնած՝ հատ հատ ցոյց է տալիս աղջկայ հանդերձեղէնը և տղայի տանից բերած ընծաները։ Բարձրը ձայնով կոչում է. «Աստուած շէն պահի Բարսեղ խնամուն, որ բերել է այսինչ խալաթը, որ արժէ 25 մանէթ, այսինչ խալաթը 30 մանէթ» և այլն և միշտ բարձր գնահատելով։

Անմիջապէս յետոյ սկսւում է *սաշու* (հարսնացուի երեստեսնուկը), այն է՝ դրամական նուէրներ հարսին փեսայի, կնքաւորի և սորանց բարեկամների կողմից և իւրաքանչիւր նուէրը և քանակութիւնը յայտարարում է բարձրաձայն։

Հասնում է այն րոպէն՝ որ հարսին պէտք է դուրս բերեն խնամիների առաջ։ Նորա գլուխը և երեսը ծածկում են քողով։ Դրացիներից կամ բարեկամներից մի հասակով կին առաջնորդում է նորան և կոչւում է *ուստա*։ Դրանը հասած՝ աղջիկը հեզութեամբ գլուխ է խոնարհեցնում հանդիսականներին և ապա նա և ուստան միմեանց յետևից ծանրաքայլ մօտենում են և համբուրում նախ քահանայի աջը, ապա քաւորի և ապա միւս հրաւիրուածների, որից յետոյ նորից կանգնում են դրան մօտ։

Մի շիշ օղի, երկու բաժակ ափսէի մէջ դրած, ուստան լցնում է բաժակները, իսկ աղջիկը ափսէով մատուցանում է

մինը քահանային, միւսը քաւորին եւ ապա ամենքին՝ նստած կարգով, կանխապէս իւրաքանչիւր ձեռքը համբուրելով։

Բաժակն ընդունելուց, օրհնելուց եւ խմելուց յետոյ իւրաքանչիւր ոք դրամական նուէր է ձգում բաժակի մէջ աղջկայ համար իբրեւ *Երեսատեսնելիք* եւ ուստան բաժակից հանում է դնում ափսէի մէջ։

Բոլորին օղի մատուցանելուց յետոյ աղջիկը նորից կանգնում է դրան մօտ, ուստան բանում է նորա երեսը, ցոյց է տալի բոլոր հանդիսականներին, լսում են շնորհաւորանք եւ ապա երկուսն էլ առանձնանում են։

*Երեսատեսնելիքի* նուէրները պատկանում են աղջկանը, իսկ *սաշուն* նուէրները ընդունում է աղջկայ կամ փեսայի հայրը եւ նորանով զարդ է դնում աղջկայ համար։

Այսպէս է վերջանում նշանադրութիւնը Շիրակցոց, Բասենցոց եւ Կարսեցոց մէջ։

Դարալագեազի գաղթած հայ գիւղերում, Սէս, Կորադիզ, Խաչքար եւ այլն տղայի հայրը կամ բարեկամները գնալով աղջկայ հօր տունը՝ խօսք են բանում. աստիճանաւոր մօտենում են այցելութեան բուն նպատակին, եթէ փոխադարձաբար համաձայնութիւն է կայանում, հանում են իւրեանց հետ բերած օղու շիշը եւ շնորհաւորական բաժակներ են խմում. հակառակ դէպքում շիշը չի կարող աշխարհ դալ։ Համաձայնութիւնից յետոյ աղջկայ մօրը յանձնում է ոսկի, կամ մատանի եւ կամ այլ նուէր եւ այս կոչւում է *բէն*։

Մի քանի ժամանակից յետոյ տղայի հայրը իւր քաւորով եւ բարեկամներով գնում են աղջկայ հօր տունը՝ տանելով ոսկի կամ մանեակ կամ այլ նուէր։ Միեւնոյն ժամանակ իւրաքանչիւրը նոցանից տանում է մրգեղէն, ուտելիք, որ հացկերոյթից յետոյ դնում են առանձին առանձին ի ցոյց հանդիսականների։ Սա կոչւում է *շիրընկըղ*։ Մինի բերած շիրընկըղը թողնում են ի վայելումն հիւրերի, իսկ մնացեալը տանում են աղջկայ մօտ։

Հեռաւոր հիւրերի ցրուելուց յետոյ մնում են մերձաւոր բարեկամները, որոնց մօտ դուրս է գալի հարսնացուն, մօտենում

է իւրաքանչիւրին, գլուխ է խոնարհեցնում և ստանում պարգև, *երեսնալայ*։

Երեսնալայից յետոյ վերջանում է նշանադրութեան հանդէսը և. երբ տղայի հայրը հրաժեշտ է տալու, նորա հետ վերադարձնում են նորա բերած *բրիանի* (տապակած ոչխար) ազդը (բուդը)։

Փեսային տեսնելու համար, եթէ նորան չեն հրաւիրել զոքանչի տունը, աղջկայ հայրը մի բարեկամ կնոջ հետ այցելութեան է գնում, տանելով *ղնջ*, այն է պարգև և բրիան։ Այնուհետև մինչև պսակը փեսան ուղարկում է հարսի համար ջրհօրնեացը և զատկին բրինձ, մոմ, մրգեղէն, կարմիր ձու, աջահամբոյր քահանային տալու և ձեռքերի համար *խինա*։

. Երևանում՝ աղջիկն ու տղան իրար հաւանելուց յետոյ՝ տղային բերում են աղջկայ տունը, ուր քահանան պահպանիչ ասելով երկուսի գլխին ևս մատանին թոյլ դնում է տղայի աջ միջամատում և առաջարկում է աղջկան հանել և դնել իւր մատում՝ եթէ հաւանում է տղային։ Աղջիկը ամօթխածութեամբ մօտենում, հանում է և դնում իւր մատը։ Քահանան նորից հարցնում է փոխադարձ համաձայնութեան մասին և գլխի շարժումով պատասխան ստանալով օրհնում է նրանց։ Սա նշանադրութեան սկիզբն է կամ բէհը,

Ապա իսկական նշանադրութիւնից մի օր առաջ, պատրաստութեան համար տղան ուղարկում է աղջկայ տունը միս, իւղ, գինի, բրինձ, օղի և մեղրամոմ. քահանան առաջ օրհնում է նշանը տղայի տանը և ապա զուռնայով հրաւրանաձգութեամբ, աղմուկով, բարեկամներով շրջապատուած, գնում են աղջկայ տունը, ուր խառնուելով նորա բարեկամների հետ՝ ուրախութիւն են անում, իսկ հարսները ու աղջկունք պարում են։ Քահանան առանձին սենեակում միմեանց մօտ կանգնեցնելով նշանուածներին՝ նշանը տալիս է աղջկան և օրհնում է։ Հրաւիրուածները ճաշում են և ցրւում։

Հարսանիքից մի կամ երկու շաբաթ առաջ պատրաստւում է *քթէթը*, այսինքն տղան գնում է զանազան կտորե-

դէն իւր և հարսր հանդերձի համար, որ մեծ հանդիսով կարում են տղայի բարեկամները։

*Քեասումը*. Պարալագեազի նոր հայերի մէջ նշանադրութիւնից յետոյ տղահայրը իւր կնոջով և բարեկամներով և քահանայով գնում է նոր խնամու տունը *քեասումը* կտրելու, այսինքն վերջնական փոխադարձ պայմանը որոշելու թէ փեսահայրը որքան բրինձ, գինի, արաղ, մսացու և փող պէտք է ուղարկէ աղջկայ հօրը հարսանիքի պատրաստութիւնը տեսնելու համար։ Տուած փողը կոչւում է *նաղդ* կամ *բաշլըղ*։

Քեասումը անելու ժամանակ տղահայրը առանձին նուէր է անում գիւղի եկեղեցու օգտին, 50 կոպէկ կամ աւելի երեցփոխին և մի ռուբլի գիւղի *մէլիքին*, այն է հասարակութեան տանուտէրին։

Քեասում կտրելու սովորութիւնը, փող և խալաթ որոշելը կայ նաև Շիրակի, Բասէնի և Կարսայ հայերի մէջ. քեասումի հետ որոշւում է և միւս նուէրների քանակութիւնը—մսացու կով կամ եզ, իւղ, չիր, գինի, բրինձ և այլն, և այս ուտելեղէնները կոչւում են *եզու* կամ *բարխու*։

Ղազախում կայ և այժմ կամաց կամաց վերանում է քեասումի սովորութիւնը, բայց նոցանում կոչւում է *աստառածնէր*։

Այս նախապատրաստութիւններից յետոյ արդէն մօտենում է հարսանիքի կամ պսակադրութեան հանդիսի օրը։ Բասէնում և Շիրակում նախկին ժամանակ, 3—4 օր հարսանիքից առաջ փեսայի տանից տանում էին հարսնացուի համար կրծքի արծաթեայ զարդ—*օղակ* և մի թոփ *շիլա* հարսին շապկացու։

Այժմ սորանց փոխարէն ուղարկւում են մի կաւէ *ճրագ*, մի *հաց* և մի *խնձոր*, որոնք միասին կոչւում են Ղարսեցոց մէջ պուման, իսկ Բասենցոց մէջ *բուրջալ*։ Պումանը կամ բուրջալն ստանալուց յետոյ անմիջապէս աղջկայ հայրըն աւելացնելով նորա վերայ իւր կողմից մի մի ճրագ, հաց և խնձոր, ուրեմն իւրաքանչիւր տեսակից մի մի զոյգ իբրև զուգաւորութեան նշան՝ վերադարձնում է տղայի հօրը՝ Սորանից յետոյ արդէն ասում են թէ Ազոյի կամ Կարոյի աղջկանը *բուրջալեցին*։

Բուրջալը նշան է, որ աղջիկ հարսնացուին տնէ տուն պտտեցնելու ժամանակ է։ Արդարև, աղջկայ բարեկամները առանձնապէս հրաւիրում են իւրեանց մօտ աղջկանը և նորա հետ հասակակից ազաբ աղջիկներին պարելու և ուտելու։

Հարսանիքի առաջին ճաշը տրւում է կանանց, որոնց հրաւիրելու դուրս է գալի գիւղի մէջ քաւորակինը՝ ուսին կամ գլխին դրած հարսնացուի համար նոր կարած *քաթիբան* կամ *կաքան*, իսկ ձեռքում ափսէի մէջ *չալազ* (քիշմիշ, լոբլաբու և այլն) զուռնան առաջին, միայնակ պտտւում է գիւղի մէջ և հրաւէր է կարդում կանանց։ Հրաւէրը կոչւում է *խնդրախ*։ Հրաւիրուածները վերցնում են չարազից և հետաքրքրութեամբ զննում կաքան կամ քաթիբան։

Հրաւիրուած կանայք փեսայի մօր համար տանում են ընծայ *սեղան*, այն է պանիր, իւղ, ձուաձեղ, զուլպա, արախճին և այլ այսպիսի բաներ, ով ինչ կարող է, դարսելով սոցա սինու մէջ և կամ սինի չունեցողը՝ մաղի մէջ։ Կանայք ճաշում են ցերեկով և հարսանիքի առաջին օրը, որի երեկոյին հրաւիրւում են տղամարդիկ։ Սակայն եթէ փեսան և հարսը նոյն գիւղումն են, տղամարդկանց ընթրիքը լինում է հետևեալ օրը, երեկոյին։

Երկու երեք օր առաջ տղամարդկանց հարսանիքի են հրաւիրում փեսան և նորա քաւորը զուռնան առաջը և ձեռքում մի շիշ արաղ։ Իւրաքանչիւր տան առաջ տան տէրը յարգանքով ընդունում է նորանց և մի բաժակ օղի է վայելում նորանց ձեռքից իբրև նշան, որ նա ընդունում է հրաւէրը, պարտաւորւում է գալ հարսանիքի և *սաչու* տալ։ Նորանից ով կամք չունի սաչու տալ, նա օղի չէ ընդունում և առաջին ընթրիքը վայելելուց յետոյ այլ ևս չէ մասնակցում հարսանիքին։ Սաչու տուողների համար, առաջին ընդհանուր ընթրիքից յետոյ, առանձին մսացու է մորթւում և առանձին կերակուրներ պատրաստւում։

Ուրբաթ օրը հարկաւոր է հրաւիրել քաւորին և միւս ժողովրդականաց. ուստի մսացուն մորթելու օրը փեսան, նո-

րա ազափները, Հայրը, մայրը, քոյրը և մօտ բարեկամները գնում են քաւորին Հրաւիրելու։

Փեսան վերցնում է իւր Հետ շաքարի կտորներ, կամ խնձորներ, նորա մայրը կամ քոյրը ձեռին մի փունջ ծաղիկ (մեխակ, մախմուր ծաղիկ, Հոտաւէտ չորացած կամ կանաչ մարզա և այլն), իսկ ազափները գաւաթով գինի, մի բաժակ ափսէի մէջ, շուրջը չոր միրգ շարած։ Փունջը մատուցւում է քաւորակնոջը, իսկ մնացեալներին մի բաժակ գինի։

Այսպէս է լինում՝ երբ քաւորը և փեսան միևնոյն գիւղումն են, իսկ եթէ ջոկ գիւղումն են, այն ժամանակ քաւորը գալով փեսայի տունը, այն տեղ է պատրաստում *ծառը*, որ պարսկաՀայերի մէջ կոչւում է *ուրց:*

Փեսան և Հիւրերը Հաւաքուելուց յետոյ՝ ամէնքը միմեանց կից բոլորշի նստելով սկսում են բարձրաձայն գովել ուրցը, որ ունի իւր յատուկ երգերը։ Ամենից առաջ գովում է քաւորը, ուրցը ձեռքում բռնած, այսինքն նա ասում է երգից մի տուն և ապա տալիս է կողքի նստածին, որ նոյնպէս երգելով մի տուն՝ տալիս է երրորդին և այլն։ Այսպէս ուրցը պտոյտ է անում մինչև երգի աւարտը.

Ուրցը կամ ըստ մեր ռուսաՀայերի՝ ծառը, կազմուած է մի գլխաւոր փայտից, որի շուրջը լժէք բարձրանում են ճիւղեր։ Սորանց, ինչպէս և գլխաւոր փայտի վերայ շինած են խաչաձև փայտեր, որոնց ծայրերում տնկում են խնձորներ։ Գլխաւոր փայտի վերին ծայրում դրած է Հորիզոնական գիրքով խաչ, որ կոչւում է *կաքաւ* և նորա խնձորները *գլխախնձոր*։ Բացի խնձորներից՝ ուրցը զարդարում են նաև գոյնզգոյն թելերով։

Ուրցի դովասանական երգն Դալալաւեալի Կորադիզ, Սէս, Մարտիրոս, Փաշալու, Գնդէվազ և այլ գիւղերում, ուր բնակուած են գաղթած Հայեր, երգւում է այսպէս.

Էս թագն ևր խաչ,
Խաչի կոթն ևր խաչ ու մաչ,
Ձնախաւոր պսակդ,
Արևդ ևր կանանչ։

Ես Թագն իր խաչ,
Խաչի կոթն իր խաչ ու մաչ,
Ընախսաւոր Թագուհիդ,
Արևդ իր կանանչ։
Ես Թագն իր խաչ,
Խաչի կոթն իր խաչ ու մաչ,
Գթակդ իր բուխարի
Արևդ իր կանանչ։
Ես Թագն իր խաչ,
Խաչի կոթն իր խաչ ու մաչ.
Զուխադ իր ալ մահուդ՝
Արևդ իր կանանչ։
Ես Թագն իր խաչ,
Խաչի կոթն իր խաչ ու մաչ,
Բարուքդ (գօտի) իր ապրահ (Քիրմանի շալ)
Արևդ իր կանանչ
Ես Թագն իր խաչ,
Խաչի կոթն իր խաչ ու մաչ.
Սոլերդ իր սաղրի՝
Արևդ իր կանանչ։
Ես Թագը վէր Թագի նման է,
Դաւիթ մարգարայի Թագի նման է,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագի նման է,
Սողոմոն իմաստունի Թագի նման է,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագի նման է,
Մելքոն, Կասպար, Բաղդասար Թագի նման է
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագի նման է,
Կոստանդին Թագաւորի Թագին նման է,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագի նման է,
Ապկար Թագաւորի Թագին նման է,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագաւորի Թագին նման է,
Սէնաքարիմ Թագաւորի Թագին նման է,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագաւորի Թագին նման է,

Յովսափ Թագաւորի Թագին նման ի,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագաւորի Թագին նման ի,
Տրթաթ Թագաւորի Թագին նման ի,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագաւորի Թագին նման ի,
Մանասէր Թագաւորի Թագին նման ի,
Որ Թագն շուրը մուրը կայ։
Ես Թագն վէր Թագաւորի Թագի նման ի,
Կիրկեօր Լուսաւորչի Թագի նման ի,
Որ Թագը շուրը մուրը կայ։
Ես Թագը ինչ ուզելի,
Թագաւորի մէր կայնած կուզի,
Որ շուռ կայ։ (Թագաւորի մայրը կանգնում է)։
Ես Թագն ինչ ուզէլի,
Թագաւորը իւր ազափներով կայնած կուզի,
Որ Թագն շուռ կայ։ (Նոյնը)
Ես Թագն ինչ ուզելի,
Թագաւորի քոյրերը կայնած կուզի,
Որ Թագն շուռ կայ (Նոյն.)
Եկ բարև, եկ բարև,
Սուրբ Ծնունդին տանք բարև,
Թագաւորին ու Թագուհուն տայ շատ արև։
Եկ բարև, եկ բարև,
Սուրբ խաչափայտին տանք բարև,
Թագաւորին, Թագուհուն տայ շատ արև։
Եկ բարև, եկ բարև,
Սուրբ գլխատէրին տանք բարև,
Թագաւորին, Թագուհուն տայ շատ արև։
Եկ բարև, եկ բարև,
Քսան ու չորս մարգարէանց տանք բարև,
Թագաւորին, Թագուհուն տայ շատ արև։
Եկ բարև, եկ բարև,
Տասներկու առաքելոց տանք բարև,
Թագաւորին, Թագուհուն տայ շատ արև։
Եկ բարև, եկ բարև.
Երեք հարիւր վացունը վեց հայրապետաց տանք բարև,
Թագաւորին, Թագուհուն տայ շատ արև։
Եկ բարև եկ բարև,

Քառսուն զինւորաց տանք բարև,
Թագւորին, թագուհուն տայ շատ արև։
  Եկ բարև, եկ բարև,
Քառսուն մանկանց տանք բարև,
Թագւորին, թագուհուն տայ շատ արև։
  Եկ բարև, եկ բարև,
Երեք ժանկունքին տանք բարև,
Թագւորին, թագուհուն տայ շատ արև։
  Եկ բարև, եկ բարև,
Քառասուն կուսանաց տանք բարև,
Թագւորին, թագուհուն տայ շատ արև։
  Եկ բարև, եկ րարև,
Ամենայն սրբոց տանք բարև,
Թագւորին, թագուհուն տայ շատ արև։

Ապա կանգնում են բոլորշի շղթայուած և թագաւորին կանգնեցնելով շրջանի կեդրոնում, երեսը դէպի ստորաթարան (արևելք), ազափները գովում են նորան հետևեալ երգով.

  Թագւոր, ինչ բերեմ քեզ նման,
Կեարնան վարդն որ կբացուի,
Խոտն (հոտն) արևուդ նման։
  Թագւոր, ինչ բերեմ քեզ նման,
Նարկիզ ծաղիկ որ կծաղկի,
Խոտն անեօշ արևուդ նման։
  Թագւոր, ինչ բերեմ քեզ նման,
Բալասան ծաղիկ որ կծաղկի,
Խոտն անեօշ արևուդ նման։
  Թագւոր, ինչ բերեմ քեզ նման,
Սուսուն ծաղիկ որ կծաղկի,
Խոտն անեօշ արևուդ նման։
  Թագւոր, ինչ բերեմ քեզ նման,
Սուսամբար ծաղիկ որ կծաղկի,
Խոտն անեօշ արևուդ նման։
  Թագւոր, ինչ բերեմ քեզ նման
Ամառուան վարդն որ կբացուի,
Խոտն անեօշ արևուդ նման։

Թագւորը, քաւորն և ազափները գնում են ուրբաթ օր փեսայի զոքանչին այցելութեան։ Փեսան համբուրում է

նորա ձեռքը, իսկ նա միւսայի երեսը։ Փեսան և քաւորն ստանում են գուլպա, արխալուղ և այլն ըստ կարողութեան։ Ապա պտտում են գիւղի մեծերի մօտ, համբուրում է փեսան նորանց ձեռքը. ծաղկափունջ է մատուցանում նորանց իբրև հրաւիրման նշան և նոքա էլ համբուրում են նորա երեսը։ Այս հրաւէրը կոչւում է „*խարնըսի խաբար*“։

Հրաւէրի հետևեալ օրից քաւորը միշտ իւր ձեռքում պըտտեցնում է ուրցը, մինչև հարսանիքի վերջը։

Հրաւիրուածների առաջ կատարւում է մսացու կովի կամ եզան մորթելու հանդէսը։ Հանդիսաւոր կերպով դուրս են հանում նորան մի ընդարձակ տեղ, շրջապատում են նորան կանայք և տղամարդիկ։ Զուռնան ածում է „Քեօր օղլու“ եղանակը։ Թագաւորը մօտենալով՝ ոտակապ և վայր ձգած մսացուին՝ դանակով փոքր կտրում է նորա վզի կաշին, որից յետոյ մորթում է մի այլ անձը։ Մսացուի մազից մի քանիսը դնելով արիւնոտ դանակի բերանին, թագաւորը պահում է իւր մօտ մինչև հարսանիքի վախճանը։

Երևանում փեսան նստում է մսացուի վերայ մինչև մորթել՝ վերջացնելը։ Ապա արիւնոտում է մի կողպէք և տալիս է իւր մօրը պահելու մինչև առագաստը։ Իսկ Գաւալու գիւղում արեան մէջ թաթախում են դանակ և մազէ լար։ Խաչիկ գիւղում մսացուի պոչից երկար մազերը իրար կապելով գօտի շինում և արեան մէջ թաթախելով կապում է թագաւորը իւր մէջքը, անմիջապէս մարմնի վերայ, որպէս զի *չար աչքը* չազդի նորա վերայ։

Դարալագեազի նոր հայերի (դաղթած) մէջ մսացուն մորթելուց յետոյ զուռնան „քեօր օղլու“ եղանակը փոխում է *ձեռնախառնի* եղանակի, որով աղջկունք և հարսներ թաշկինակները ծածանելով պտըտում են մսացուի շուրջը։ Ապա տղամարդիկ նորանց հետ շղթայ կապած կազմում են ահագին շրջան և պարում են *գեօնդ* (եալլի)։ Այդ ժամանակ թագաւորի ազգականները գինի են բերում իւրեանց տներից և հիւրասիրում են ամենին։

Այլ գիւղերից հրաւիրուած հիւրերի գալու ժամանակ զուռ-

նան դուրս է գալի ընդառաջ և ընդունում է իւրաքանչիւրին, իբրև արտակարգ պատիւ։

Սոյն ուրբաթ երեկոյին պատրաստում են հարսնահօր տան համար, քեասումի համաձայն, բոլոր խոստացած նուէրները, որ կոչւում է *նանը գօշտ*, (նան — հաց, գօշտ միս) և բարձած ազափներից մինի վերայ, ուղարկում են խնամու տունը։ Նա ասւում է *աղուէս*։

Աղուէսին ուղեկցում են զուռնան, պարող աղջկունք և տղայք։ Դորանց գնալու ժամանակ, ճանապարհին, ընդառաջ է դուրս գալիս գիւղի կտրիճներից մինը և առաջարկում աղուէսին կամ մենամարտել կամ տալ նորան մի գաւաթ գինի և ազատուել։ Մենամարտը հազիւ է գլուխ գալի, այլ յաճախ ուզածն ստանալով՝ հաշտութեամբ է վերջանում գործը։

Ղազախում, փեսան իւր ազափներով երբ գնում է մի այլ գիւղ իւր նշանածի հետ պսակուելու, նա իւր հետ անպատճառ պէտք է վերցնէ հաց, խաշած միս, գինի հարսնացուի գիւղի տղաների համար, որոնք խմբովին կտրում են գիւղի մօտ հարսնաւորների ճանապարհը և պահանջում են իւրեանց հասանելի ուտելեղէնը, որ նորանցում կոչւում է *ազափանա*։ Երբեմն ազափանայի համար ընդհարումն է ծագում։

Դարալագեազում նանը գօշտը տանելիս տանում են և *խինա*, որի կէսը քաւորակինը թմրաւորի տանը պահում է ու մօտիկ հրաւիրուած ազգականներին բաժանելով՝ ստանում է նորանցից նուէր։

Ագուլիսում և շրջակայքում, հարսանեաց հանդիսի սկզբում, ուրբաթ օրը, սազանդարներով կամ զուռնայով կատարւում է *տաշտադրէքը*։ Հարսանիքի համար հաց թխող և խմոր հունցող կանայք տաշտի երկու ծայրից բռնած պարում են ու փեսայի հօրից ստանում են նուէր։ Նոյն նուէրը տրւում է թոնդիր վառելու և գաթան թխելու ժամանակ։

Ապա ընտրւում է *մատանապետ*, որ նուէր ստանալով շալ գօտի պարտաւորւում է վերահսկել ուտելեաց և ըմպելեաց վերայ։ Կերակուր եփողները՝ ամանները ձեռքներին պարելով՝ ստանում են իւրեանց հասանելի նուէրը և կանգնում են գործի։

Մարդկանց հրաւէրը կատարւում է մի ընտրեալի ձեռքով, որ մի մետաքսէ թաշկինակի մէջ չոր պահած ծաղիկներ է բաժանում և թաշկինակն իրան վերցնում։

Հետևեալ օրը, շաբաթ, ընտրւում է մի *ազափբաշի* և սա զուռնայի ուղեկցութեամբ, մետաքսէ թաշկինակը ձեռափայտի վերայ դրօշականման կապած, շրջագայելով հրաւիրում է թագաւորի մօտ ազգականներին, որոնք մի մի թաշկինակ են կապում ազափբաշու փայտին և զուռնային և ուև է պարգև ուղարկում փեսային։

Վերջը նուռն և խնձոր առած ազափբաշին հրաւիրում է քաւորին և քաւորակնոջը և զուռնաչու հետ սոցանից ստանում են նուէր մի մի թաշկինակ։ Քաւորակինը հետը առնում է մի *կոտր շաքար* և *կանաչ* ու *կարմիր* մետաքսէ թել-հինան։ Դորա համար քաւորակնոջ առաջ դնում են սինի, ջուր և հինա։ Հէնց որ նա հինա և ջուր խառնում է իրար, զուռնան իսկոյն նուագում է, աղջկունք, կանայք և տղամարդիկ, որոնք աչքերը բևեռած նայում էին քաւորակնոջ արարքի վերայ, իսկոյն ձայն են տալի ամէն կողմից «Աստուած շընորհաւոր անի», և հինան սինով բարձրացրած պարում են։

Ապա մի խոնչայի մէջ պատրաստում են զանազան մրգեղէն և շաքար և միւս խոնչայի մէջ հարսի հանդերձը և հինան։ Երիտասարդ տղայք հինայով ներկում են մի խոյի ճակատը և մէջքը և կանաչ կարմիր թել են կապում վիզը, իսկ եղջիւրները զարդարում են վառ մոմերով։

Խոնչաներն ուսերին ազափբաշին գլուխ կանգնած՝ երիտասարդները զարդարուն խոյը առաջն արած՝ պտոյտ են տալի հանդիսականների մէջ, և յետոյ քաւորակնոջ հետ, զուռնա նուագելով տանում են այդ բոլորը հարսնացուի տունը։ Նորահարսի բարեկամները զուռնայով ընդառաջ են դուրս գալիս և ընդունում են նորանց։

Տարած խոնչաները և խոյը նորից պտտցնում են հանդիսականների մէջ և յետոյ խոնչաները նուիրում են հարսնացուին, իսկ խոյը նորա եղբօրը, որից յետոյ քաւորակինը, ազափբաշին և նորանց ուղեկիցները նորից վերադառնում են փեսայի մօտ։

Հին Նախիջևանում և Հին Ջուղայում հարսանիքը սկըսւում, (նոցանց լեզուով *կայնում ա*, բասենցոց լեզուով *ըըռնում է*, *Ղազախում-նստում ա*) ուրբաթ օրը և այդ օրը քաւորը իւր հաշուով բաղնիք է հրաւիրում Թագաւորին իւր ազափներով և այն տեղից իւր տունը հացկերութեան, ուր զուռնայի նուագածութեամբ ուրախութիւն են անում և պարում մինչև գիշերը:

Հետևեալ օրը, շաբաթ, կէս օրից առաջ քաւորակինը բաղնիք է հրաւիրում հարսնացուին նորա հասակակից աղջկանց հետ, տանելով բաղնսպան կնոջ համար նուէր մրգեղէն և պարսկական շաքարի ամենափոքրիկ գլուխ:

Այդ օրը, առաւօտ Թագաւորը ուղարկում է հարսին մի ոչխար՝ եղջիւրների վերայ խնձորներ անցուցած և վիզը կարմիր Թաշկինակ կապած: Իսկ քաւորին ազափների ձեռքով ուղարկում է *խոնչա* (շաքարագլուխ և մրգեղէն) և երեկոյեան նոյն ազափներով ուղարկում է հարսին մրգեղէն և չոր, չշաղախած, հինա և փոխարէնը հարսի տանից ստանում է նուէր մի շապիկ՝ կարմիր կամ սպիտակ ղանաուզ մետաքսէ կըտորից:

Ապա երեկոյին՝ ազափները վառած մոմերով, զուռնայով, ուրախ և զուարթ գնում են քաւորի տունը՝ քաւորին հրաւիրելու Թագաւորի մօտ: Քաւորը իւր հետ առնելով հինա, մոմ, զանազան մրգեղէն, կանաչ-կարմիր ժապաւէն և հարսի նաբօտը, բարեկամներով հանդերձ, շրջապատուած յիշեալ ազափներով՝ գնում են Թագաւորի մօտ, որ ընդառաջ է դուրս գալի, նուիրում է նորան մի խնձոր կամ նուռն և ներս է հրաւիրում:

Երևանում նոյնպէս քաւորը իւր հաշուով հրաւիրում է բաղնիք փեսային և ազափներին, ուր լողանում են, ուր ածելում են Թագաւորի և ազափների երեսի մազերը, զանազան զուարճալի խօսքերով հագցնում են Թագաւորի նոր շորերը, ապա այդ տեղից զուռնայով գնում են ուղղակի քաւորի տունը, ուտում են միայն մրգեղէն և խմում են գինի: Պարում է *առաջինը* քաւորի կինը կամ աղջիկը՝ ձեռքում ծածանելով

մետաքսէ թաշկինակ (բաղդադի) և ապա պտրելով մտնում է թագաւորին և թաշկինակը կախում է աջ ուսի վերայ՝ ծայրերը ձախ թեւի տակ։ Այդպէս կապած թաշկինակը կոչւում է *կոսպանդ*։

Ապա ամբողջ խումբը, առնելով իւր հետ քաւորակնոջը, գնում են թագաւորի տունը։ Այստեղ ուտելուց և պարելուց յետոյ՝ գիշերը *քթեթն* (հարսանեաց հագուստ) առած, զուռնայով, վառ մաշխալանելով, ուրախական ազաղակներ արձակելով գնում են հարսի տունը։

Հին Ջուղայում և Հին Նախիջևանում ընթրիքից առաջ, թագաւորին առանձին սենեակում նստեցրած՝ շրջապատում են նորան և պարում են։ Սափրիչը ածելում է նորա երեսը և նորա կուրծքից դեռ չառած սպիտակ թաշկինակը, սափրիչը տալիս է հայելին թագաւորի ձեռքը և հանդիսականներին հրաւիրում է նուէրներ դնել հայելու վերայ սափրիչի օգտին։ Առաջինը մտնում է քաւորը, որ համբուրելով թագաւորին, դրամական նուէր է դնում հայելու վերայ։ Նորանից յետոյ մտնում են թագաւորի մայրը, քոյրը և այլ բարեկամները։

Ընթրիքից յետոյ քահանան օրհնում է թագաւորի հանդերձը, որի ժամանակ թագաւորը և աջ ու ձախ կողմից քաւորը և խաչեղբայրը վառ մոմերով՝ չոգում են ծնկների վերայ։ Քահանան իւր վարձն ստանալով քաւորից և թագաւորահօրից՝ աճուրդ է նշանակում *ազափբաշի* ընտրելու և ազափներից ով շատ է առաջարկում եկեղեցու օգտին, նա է ընտրւում ազափբաշի։

Վերջինս իրաւանց տէր դառնալով՝ սկսում է հրաւիրականների առաջ օրհնած հանդերձը հագցնել թագաւորին և չուխի մի թեւը չհագցնելով կանգ է առնում մինչև թագաւորահայրը տայ նորան *խալաթ*։ Խալաթն ստանալուց յետոյ ազափբաշին տանում է թագաւորին միւս սենեակ և այնտեղ հագցնում է միւս հանդերձը։

Ապա նուագածուները տեղափոխւում են կանանց բաժին, ուր հրաւիրւում են թագաւորը, կնքաւորը և խաչեղբայրը։

Քաւորի կինը կամ քոյրը՝ կանաչ ու կարմիր ժապաւէնները ձեռքին, պարելով մօտենում է թագաւորին և ժապաւէնները դնում է նորա արխալուղի կոճակներում։ Սորանից յետոյ նոյն քաւորակինը կամ քոյրը պարելով մօտեցնում է ափսէի մէջ շաղախած հինան, որի մէջ աջ ձեռի ճկոյթը թաթախում են թագաւորը, կնքաւորը և խաչեղբայրը և դրամական նուէր ձգում ափսէի մէջ։

Թարալագեազի ղաղթական հայերի մէջ սափրիչը ածելում է թագաւորի երեսը հրապարակով, հանդիսականների առաջ և կիսատ թողնելով նուէրներ է ստանում հանդիսականներից, որ կոչւում է *ըռըսում*՝, այսինքն պարտաւորութիւն։ Սորանից յետոյ թագաւորը փոխում է հանդերձը, նորա քոյրը կապում է նորա ուսին թաշկինակ, նորանց բարբառով *խարչըկոթ*, և աչքերին սև դեղ է քաշում, որից յետոյ գնում են հարսի տունը։

Դաւալու գիւղում՝ Խոր վիրապի մօտ, ուղարկում են հարսի համար մի տոպրակ հինա ամանի մէջ, հետն էլ չամիչ, փշատ և այլ մրգեղէն, վրայից էլ թաշկինակով ծածկած։ Քաւորի աղջիկը իւր գլխին դրած այդ բոլորը, զուռնայի հետ, տանում է հարսի տունը, ուր հարսնամայրը քաւորի համար ուղարկում է մի զոյգ գուլպա։

Խաչիկում առաջին ուսկապը *կարմիր* մետաքսից կապում է քաւորկինը կամ քոյրը թագաւորի աջ ուսին, իսկ *կանաչը* ձախ ուսին կապում է հարսի տանը հարսնաքոյրը կամ մայրը։ Երկու ուսկապն էլ քահանայի բաժինն է։

Ղազախում գեղեցիկ տեսարան է, երբ թագաւորը զարդարուած նոր հանդերձով և շրջապատուած հանդիսականներով և ազափներով, որոնք այնտեղ կոչւում են *մակարներ*, կանգնած բացօթեայ, նորա քոյրը *քեալաղայայ* մետաքսէ թաշկինակը ձեռին ծածանելով, զուռնայի նուագածութեամբ պարում է ծանրաքայլ և մօտենալով եղբօրը, համբուրում է նորան և թաշկինակը աջ ուսով կապում է ձախ թևի տակ։ Դա կոչւում է այն տեղ *ուսկապ*։

Ծիրակի, Կարսի և Բասենի գիւղօրայքում հարսանքի

երկրորդ օրը մի քանի երիտասարդներ քաւորի առաջնորդութեամբ, բայց առանց թագաւորի, գնում են հարսին բերելու և սոքա կոչւում են *հարսնառներ*։

Վերջիններիս գնալուց յետոյ՝ քաւորի ազգականներից մինը հրաւիրում է իւր տուն նորափեսին և ժողովում է նորա համար ազափներ, լողացնում են նորափեսին, հագցնում են նոր հանդերձ։ Սափրիչը սափրում է նորա և ազափների երեսները։ Այդ ժամանակից նորափեսին անուանում են *թագաւոր*։ Նորա գլխի փառը կամ արախճինը սափրիչը վերցնում է իւրեան։

Ազափները թագաւորի վզով խաչաձև անցուցանում են մետաքսէ թաշկինակ, որ և ասւում է *կոսպանդ*, իսկ ոտներին, հագցնում են սօլեր։ Կոսպանդը և սօլերը նուիրում է քաւորը։ Ազափները հինով ներկում են թագաւորի և իւրեանց ձեռքերը։ Բայց նախքան թագաւորին հագցնելը, նորա հանդերձը քահանան օրհնում է և յանձնում է ազափներին։

Ալէքսանդրապօլում ազափբաշին թուրը ձեռքին բարձր ձայնով դիմելով ազափների խմբին, ասում է. «Թագաւորի ազափներ, գիտէ՞ք մեր թագաւորն ինչ ունի»։ Ազափբաշին ցոյց տալով արխալուղը, շարունակում է «Մի լաւ թանգագին շալ արխալուղ, գինը չորս թուման»։ Խումբը երգում է։

Ասենք շնորհաւոր, ասենք շնորհաւոր
Մեր թագաւորին հազար շնորհաւոր։

Նոյն ազափների միւս խումբը երգում է տաճկերէն.

Դիախ մուբարաք,
Գէլսա մուբարաք,
Եըզըմ գիւվանդեաչ՝
Ալ եշիլ գեարաք։

Այս երգի բառացի թարգմանութիւնն այս է.

Ասենք շնորհաւոր,
Հագնի շնորհաւոր,
Մեր նորափեսին՝
Կարմիր, կանաչ է հարկաւոր։

Ազափի քաշին նորից ցոյց տալով մի այլ հագուստ, դիցուք շալուար, գովում է նրան և գնահատում է շատ թանգ և առաջին խումբը կրկնում է. «Ասենք շնորհաւոր» երգը, իսկ միւս խումբը՝ տաճկերէն երգը։ Այսպիսով գովում է ամէն մի շորը և վերջինը գովում է գլխարկը և մետաքսէ կուսպանգը, որ երեք անգամ պտտցնելով թագաւորի գլխի շուրջը, գլխարկը դնում է նորա գլխին, իսկ կուսպանդը կապում է ուսի վերայ։

Երբ հագուստով զարդարում են թագաւորին, ապա սկսում են գովել նորա հանդերձի մասերը։ Ազափների առաջին խումբը երգում է՝

Էս օր մեզ էրնէկ,
Մեզ հազար էրնէկ,
Մեր թագաւորն է աջ
Աչկոց խաչ ու մաչ,
Կոսպագն է կարմիր,
Արևն է կանանչ։

Սոյն այս բոլոր տունը ամբողջութեամբ կրկնում է ազափների երկրորդ խումբը, որից յետոյ առաջին խումբը նորից շարունակում է և երկրորդը կրկնում է,

Էս օր մեզ էրնէկ,
Մեզ հազար էրնէկ,
Մեր թագաւորն է աջ
Աչկոց խաչ ու մաչ,
Գօտիկն է արծաթ,
Արևն է կանաչ։

Այսպէս յիշատակւում են հանդերձի բոլոր մասերը։ Ապա սկսում են գովաբանել անմիջապէս թագաւորին նոյն երգերով, որոնցով երգւում են Շիրակի գիւղերում և որոնք յիշատակւում են ստորև. այն է „Թագաւոր ինչ բերում քէ նման“, և այլն, որից յետոյ „խնձոր, խնձոր գլխինձոր“ և այլն, գովելով նաև սորա մէջ թագաւորին, թագուհուն, խաչեղբօրը, քահանային, տիրացուներին, ազափներին և այլն։

Բասենում, Շիրակում և այլ տեղեր ագափբաշին հանդիսականների առաջ բազմացնելով թագաւորին՝ սկսում է երգել և հանել նորա նախ գուլպաները, ապա շալուարը, ապա արխալուղը, ապա շապիկը և այլն։ Իւրաքանչիւրը հանելու ժամանակ նա բարձր ձայնով երգում է.

Օղլան, հարամզադա սան,
Կորխերամ եալդադասան,
Գեաթր ջորաբն չեղարեմ,
Դհա երան դագմանամ։

Նորա թարգմանութիւնն այս է.

Տղայ, խաբեբայ ես,
Վախենում եմ խաբես,
Բեր գուլպադ հանեմ,
Էլ ոչ մի տեղից չեմ դիպչիլ։

Այս տունը ամբողջութեամբ կրկնում են միւս ազափները, որ կազմում են մի առանձին երգեցիկ խումբ։ Ազափբաշին շալուարը հանելով՝ նորից շարունակում է երգել.

Օղլան, հարամզադա սան,
Կորխերամ եալդադասան,
Գեաթր ուչկուրն չեղարեմ,
Դհա երան դագմանամ։

Ազափները կրկնելուց յետոյ՝ ազափբաշին նորից շարունակում է.

Օղլան, հարամզադա սան,
Կորխերամ եալդադասան,
Գեաթր արխալըղըն չեղարեմ
Դհա երան տագմանամ։

Այսպէս երգելով և բոլոր հին հանդերձը հանելով ազափբաշին փոխում է երգը և երգի եղանակը և սկսում է նորը հագցնել և իւրաքանչիւր մասը հագցնելիս նա երգում է՝

Գէյդըրըն, հայ գէյդըրըն,
Բիլմազ իսա բըլդըրըն,
Գեաթըր ջորաբըն գէյդըրեմ՝
Դըհա երան դագմանամ։

Այն է

Հագցրէք. հայ հագցրէք,
Եթէ չի հասկանում հասկացրէք.
Բեր, գուլպէդ հագցնեմ,
Էլ ոչ մի տեղիդ չեմ դիպչիլ։

Աղավնների խումբը այդ տունը կրկնելուց յետոյ՝ ազափբաշին շարունակում է երգել հայերէն.

Ըսենք շնորհաւոր, ըսենք շնորհաւոր,
Մեր Թագաւորի գուլպէք շնորհաւոր։

Այս տունն էլ խումբը կրկնելուց յետոյ՝ ազափբաշին շարունակում է նորից թուրքերէն.

Գէյդըրըն, հայ գէյդըրըն,
Բիլմազ խսա բըլդըրըն,
Գեաթր ուչկուրն գէյդըրեմ
Դհա երան դագմասամ։

—

Ըսենք շնորհաւոր, ըսենք շնորհաւոր,
Մեր Թագաւորի շալուար շնորհաւոր։

—

Գէյդըրըն հայ գէյդըրըն,
Բիլմազ խսա՝ բըլդըրըն,
Գեաթր քեօնագըն գէյդըրեմ,
Դհա երան դագմասամ։

—

Ըսենք շնորհաւոր, ըսենք շնորհաւոր,
Մեր Թագաւորի շապիկ շնորհաւոր։

—

Գէյդըրըն, հայ գէյդըրըն,
Բիլմազ խսա բըլդըրըն,
Գեաթր զիպունն գէյդըրեմ,
Դհա երան դագմասամ։

—

Ըսենք շնորհաւոր, ըսենք շնորհաւոր,
Մեր Թագաւորի կաբէն շնորհաւոր։

—

Գէյդըրըն, հայ գէյդըրըն,
Բիլմազ խսա բըլդըրըն.

Գեաթր կուրշաղն գէյդըրըմ,
Դհա՛ երան դագմասամ։

—

Ըսենք շնորհաւոր, ըսենք շնորհաւոր,
Մեր Թագաւորի գօտիկ շնորհաւոր։

Ապա Թուրը կապելով Թագաւորի մէջքը՝ ազափբաշին երգում է և ազափները կրկնում են հետևեալը.

Այ Նազինան, Նազինան,
Քեաբաբ բիշար քեօզինան,
Գեաթր ասպաբն գէյդըրըմ
Արգեանլարըն սեօզինան։

Սորանից յետոյ ազափները միացած դովում են Թագաւորին հետևեալ երգով.

Մեր Թագաւորն էր խաչ,
Հայոց խաչ ու մաչ,
Գուրբէքն էր Նշխուն,
Արևն էր կանանչ։

Մեր Թագաւորն էր խաչ,
Հայոց խաչ ու մաչ,
Ճալուարն էր կապոյտ,
Արևն էր կանանչ։

Մ՚եր Թագաւորն էր խաչ,
Հայոց խաչ ու մաչ,
Բինիշն (վերարկու) էր կարմիր,
Արևն էր կանանչ։

Մեր Թագաւորն էր խաչ,
Հայոց խաչ ու մաչ,
Փէշ․քիրն էր Նշխուն,
Արևն էր կանանչ։

Մեր Թագաւորն էր խաչ,
Հայոց խաչ ու մաչ,
Գդակն էր բուխարա,
Արևն էր կանանչ։

Մեր Թագաւորն էր խաչ,
Հայոց խաչ ու մաչ,

Ճապիկն էր կարմիր.
Օրեն էր կանանչ։

Այ նոր գեօզալ նոր գեօզալ,
Նոր և շնորհաւոր գեօզալ,
Քո բինիշն էր նոր, գեօզալ։

Սոյն այս գովք երգւում է և Դուալու գիւղում, որի ժամանակ բարեկամները փաթաթում են թագաւորի վզով և մի մի թաշկինակ դնում նորա գօտկում։

Բասենու գիւղերում թագաւորի շորերը հագցնելու ժամանակ ազափներից մինը հագցնում է և միւսները երգում են հետևեալ երգը.

Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ լաւ շաբիկմ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ լաւ ղութ իշլիկմ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ լաւ գօտիկմ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ լաւ ֆասմ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ լաւ վալամ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ լաւ դիզլիկմ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ ջուխտ ջորաբմ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ ջուխտ կոնդարամ պիտի.
Մեր թագւորին ինչ պիտի,
Մէկ լաւ փէշքիրմ պիտի։

Նախկին ժամանակ՝ Բասենում՝ թագաւորի գլխին դնում էին ֆաս և *ղազ* (չալմա) և վրան ծածկում էին *բինիշ*, այսինքն կարմիր մահուդից երկար վերարկու։ Ամէն ոք ձեռնահաս չէր, իբրև թանգագին հանդերձ, ունենալ իւր սեպհականը և հարկադրուած էր խնդրել ուրիշներից և սորանից յառաջ էր գալի անյարմարութիւն։ Ուստի դորանց փոխարէն այժմ գործ են ածում մորթէ պտակ և մազէ եափնջի։

Հանդերձ հագնելու նշանաւոր հանդէսը վերջանալուց յետոյ Թագաւորը համբուրում է քաւորի ձեռքը և շրջապատուած ազափներով գնում է նախ եկեղեցին՝ համբուրելու, ապա պըտտում է գիւղի բարեկամների տները, ուր նուէր է ստանում դրամ, Թաշկինակ և այլն, իսկ նորա ազափները հիւրասիրւում զանազան ուտելիքներով։ Ապա դառնում են Թագաւորի տունը։

Սակայն Թագաւորը քաւորի տանից դուրս գալուց սկսած մինչև Թագը վերցնելը միշտ ծածկում է քիթը կորած Թաշկինակով, որ իբրև Թէ գիւղում հարբուխ ցաւը չերևայ։

Տուն վերադառնալով՝ Թագաւորը քաւորի և ազափների հետ բազմում է տախտակներից կազմած բարձրութեան վերայ, որ ասւում է *Թախտ*։ Երբ այս կամ այն հրաւիրուածը մըտնում է տուն, բարևում է Թագաւորին և ազափներին այս խօսքերով. „Բարև պարոնաց“ և ազափները պատասխանում են. „Աստծու բարին գալողաց“։

Հէնց որ, երբեմն, հրաւիրականներից մինը կամ միւսը ձայն է տալիս „Թոռն է“, ազափները պատասխանում են «Աստծու դառն է» և իսկոյն Թագաւորը, կլոր Թաշկինակով քիթը ծածկած, ոտքի է կանգնում և կանգնած մնում, մինչև հիւրերից նստելու Թոյլտուութիւն չստանայ։

Դեռ քանի Թագաւորը քաւորի տանն է լինում, այնտեղ ազափները շինում են փայտից *ծառ*, որ պարսկահայերի մէջ, ինչպէս տեսանք, կոչւում է ուրց։ Ծառի վերի ծայրը կոչւում է *կաքաւ*։ Ծառը զարդարուած է գոյնզգոյն Թելերով։

Թագաւորն իւր տուն վերադառնալուց յետոյ ծառը բերում են քաւորի տնից, որպէս զի Թագաւորի տանը զարդարեն նորան խնձորներով, *Ջղանով* և ապա զովաբանեն։ Երկու ամուսնացած տղամարդ նստած բռնում են ծառը և նորանց առաջ կանգնում է լեզուով ճարպիկ մի տղամարդ։ Առաջինը մօտենում է քաւորակինը և նուիրում է մի խնձոր՝ վրան զարկած գոյնզգոյն Թելերով զարդարուն փոքրիկ խաչ, որ կոչւում է *Ջղան*։

Կանգնած ճարպիկը օդի մէջ պտտցնելով ջղանը, զուար-

*ճախսոսութեամբ կոչում է «օրհնեա, տէր, ջամլաթ, անգաջ արէք, քաւորկինը սանահօր համար մի խնձոր է բերել, ջղան վրէն, հայով, հոյով, նորա մարդը ինչ որ աշխատել է մալով, մարդով, տուէլ է էս մի խնձորին, որ կաժէ Խոյ, Խորասան, Հինդ, Հնդստան, Բալխի, Բուխարայ, Ճաքի, Ճիրվան, Ճամախի, Ստամբուլ, էս օրս իրան տղին եղնի, չէն մնայ՝ չէն»։ Ամենքն էլ ձայնում են. «չէն մնայ։»*

*Ծառ բռնողներից մինը տնկում է ջղանով խնձորը ծառի վերին ծայրում՝ կաքաւի վերայ։ Ապա բերում են խնձոր թագաւորի քոյրը, մայրը կամ հարսը և միւս բարեկամներն ու հրաւիրուածները և նրանց բերածը գովելուց յետոյ զարդարում են ծառը։*

*Ապա երկու խմբի են բաժանւում և սկսում են գովասանել ծառը հետևեալ կերպով։ Առաջին խումբը հարցական ձեւով դիմում է երկրորդին, իսկ երկրորդ խումբը պատասխանի ձեւով դարձնում է առաջինին։ Ուստի, որպէս զի կրկնութիւն չլինի, առաջին խումբը նշանակում եմ ա տառով, իսկ երկրորդը բ տառով։*

ա. Օրհնեալ է Յիսուս,
Օրհնեալ է Քրիստոս,
Խաչս բազմնեցաւ,
Ծառս բազմնեցաւ,
Ծաղկեցաւ ծառս կանանչ,
Ինչա՞ նման էր,
Լուսեղէն պտուղ տուաւ,
Ինչա՞ նման էր։
բ. Ծաղկեցաւ ծառս կանանչ,
Ինչա՞ նման էր,
Լուսեղէն պտուղ տուաւ՝
Եայվայ նման էր։
ա. Այն ճեղբեր ալփին ալփին
Ինչա՞ նման էր,
Լուսեղէն պտուղ առաւ՝
Ինչա՞ նման է։
բ. Այն ճեղբեր ալփին ալփին,
Աստուածածինն էր,

Լուսեղէն պտուղ առաւ,
Տէր Միածինն էր։
ա. Այն էգուան հովն էր հովեց
Եւ աննման էր.
Աղուէնուն գելնէր, մտնէր,
Ինչա՜ նման էր։
բ. Այն էգուան հովն էր հովեց,
Առաքեալներն էր.
Աղուէնուն գելնէր մտնէր,
Արդար հոգիքն էր։
ա. Այն բախչէն, կանանչ՝ բախչէն
Ինչա՜ նման էր.
Ծով մը կար բախչի դուռը,
Ինչա՜ նման էր։
բ. Այն բախչէն, կանանչ բախչէն,
Այն մեր դրախտն էր.
Ծով մը կար բաղչի դուռը՝
Այն էլ դժոխքն էր։
ա. Ղարղ (կանգ) եղաւ միջնածովին,
Ինչա՜ նման էր։
Այն աղբիւր որ ոտնագնաց,
Ինչա՜ նման էր։
բ. Ղարղ եղաւ միջնածովին,
Էն մեղաւորներն էր։
Այն աղբիւր որ ոտնագնաց,
Գէտ Որդանանն էր։
ա. Այն աղբիւր որ մկրտեցին,
Ինչա՜ նման էր.
Ճեղքերն ամէն ալփին ալփին՝
Եայվայ նման էր։
բ. Աղբիւր որ մկրտեցին,
Սուրբ Կարապետն՝ էր,
Ճեղքերն ամեն ալփին ալփին,
Այն խնկէ ծառն էր։
ա. Էն սեղան բարձրասեղան
Ինչա՜ նման էր.
Էն հնձան բոլոր հնձան,
Եայվայ նման էր։

բ. Էն սեղան բարձրասեղան
Էջմիածինն էր.
Էն հնձան, բոլոր հձնան,
Էն Երուսաղէմն էր։

ա. Այն խաչեր, բարձրախաչեր
Ինչա՞ նման էր.
Բուրվառ ձեռք որ ժուռ կուգար՝
Ինչա՞ նման էր։

բ. Այն խաչեր, բարձրախաչեր,
Տէր քահանան էր.
Բուրվառ ձեռք որ ժուռ կուգար՝
Այն սարկաւագն էր։

ա. Այն սալամ (թռչուն) սար հնչելով
Տեսէք այն որն է.
Էն կաքաւ կարկաչելով
Տեսէք այն որն է։

բ. Էն սալամ սար հնչելով
Վարդապետն է,
Էն կաքաւ կարկաչելով
Երիցաներն է։

ա. Էն ճնճուղ ճըլվըտալով
Տեսէք այն որն է.
Երկու ճնճուղ կանանչ բաղչէն,
Տեսէք այն որն է։

բ. Էն ճնճուղ ճըլվտալով,
Տիրացուներն է,
Երկու ճնճուղ կանանչ բաղչէն
Արդար հոգիքն է։

ա. Արեգակ նոր շաղեշաղ
Ինչա՞ նման էր։
Լուսնեակ նոր սարն ելաւ,
Ինչա՞ նման էր։

բ. Արեգակ նոր շաղէշաղ,
Այն թագուհին էր.
Լուսնեակ նոր սարն ելաւ,
Այն թագաւորն էր։

ա. Յիսուսի Քրիստոսի սուրբ զօրութիւնով
Տառս ծաղկեցաւ.

Սուրբ Կարապետի սուրբ զօրութիւնով
Մառս ծաղկեցաւ.

բ. Սուրբ Էջմիածնի սուրբ զօրութիւնով
Մառս ծաղկեցաւ։
Սուրբ Լուսաւորչի սուրբ զօրութիւնով
Մառս ծաղկեցաւ։

ա. Սուրբ Երուսաղէմի սուրբ զօրութիւնով
Մառս ծաղկեցաւ։
Սուրբ Նարեկացու սուրբ զօրութիւնով
Մառս ծաղկեցաւ։

ա. Մաղկեցաւ ծառս կենաց
Տեսէք այն որն է.
Բազմեցաւ խէչն ի գլխուն,
Տեսէք այն որն է։

բ. Մաղկեցաւ ծառս կենաց
Էն թագաւորն է,
Բազմեցաւ խէչն ի գխլուն,
Էն իւր պսակն է։

ա. Այն խնձոր, գլխախնձոր,
Տեսէք այն որն է,
Այն խնձոր, գըլվագլոր,
Տեսէք այն որն է։

բ. Այն խնձոր, գլխախնձոր,
Թագաւորահայրն է,
Այն խնձոր գլվագլոր,
Այն ազափներն է։

ա. Այն խնձոր աջ աթոռին
Տեսէք այն որն է։
Այն խնձոր ձախ աթոռին,
Տեսէք այն որն է։

բ. Այն խնձոր աջ աթոռին՝
Այն խեչեղբայրն է,
Այն խնձոր ձախ աթոռին՝
Էն թագուհին է։

ա. Այն չոբան, բարձրաչոբան
Եւ աննման էր,
Չրեղէն թուրն ի ձեռին
Ինչա՞ նման էր։

բ. Այն չոբան, բարձրաչոբան,
Այն հարսեղբայրն էր.
Ջրեղէն թուրն ի ձեռին՝
Այն խէչեղբայրն էր։
ա. Այն երկինք որ ամպ ու պարզ
Եւ աննման էր.
Երկու հաւք որ տետետափ (յոգնած)
Ինչն նման էր
բ. Այն երկինք որ ամպ ու պարզ
Այն խնամոյք էր,
Երկու հաւք որ տետետափ,
Խնամոոց խօսքերն է։
ա. Այն խնձոր գլվագլոր
Ինչն նման էր,
Փունջ մանուշակ որ ծաղկեցաւ,
Եայվայ նման էր։
բ. Այն խնձոր գլվագլոր
Էն ազափներն է,
Փունջ մանուշակ որ ծաղկեցաւ,
Էն աղջիկներն էր։
ա. Էն փտած կոճն ի որմին,
Տեսէք էն ո՞րն է.
Էն կարաս գլվագլոր՝
Տեսէք էն ո՞րն է։
բ. Էն փտած կոճն ի որմին
Ջալւորներն է,
Էն կարաս գլվագլոր,
Պառաւներն է։
ա. Ձունն եկաւ պարկն ի բերան,
Տեսէք էն ո՞րն է,
բ. Ձունն եկաւ պարկն ի բերան,
Գեղի գզիրն է։

Սորանից յետոյ դիմելով անմիջապէս թագաւորին սկսում են գովաբանել նորան հետեւեալ երգով։

Թագաւոր, ի՞նչ բերեմ քէ նման,
Քո կանանչ արեւուդ նման.
Էն բալասան ծաղիկն՝ որ կբացուի,
Բացուի արեւուդ նման։

Թագաւոր, ինչ բերեմ քէ նման,
Քո կանանչ արևուդ նման,
Էն կարմիր վարդն որ կբացուի,
Բացուի արևուդ նման։
Թագաւոր, ինչ բերեմ քէ նման,
Քո կանանչ արևուդ նման
Սիրուն մանիշակ, որ կբացուի,
Բացուի արևուդ նման։
Թագաւոր, ինչ բերեմ քէ նման,
Քո կանանչ արևուդ նման,
Էն խունկի ծաղիկ որ կբացուի,
Բացուի արևուդ նման։
Թագաւոր ինչ բերեմ քէ նման,
Քո կանանչ արևուդ նման,
Ընթառամ ծաղիկ՝ որ կբացուի,
Բացուի արևուդ նման։
Թագաւոր, ինչ բերեմ քէ նման,
Քո կանանչ արևուդ նման,
Շուշան ծաղիկ՝ որ կբացուի,
Բացուի արևուդ նման.
Թագաւորին ծաղիկ պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ ինչմնի պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ պալասան պիտէր ծաղկունակ.
Թագաւորին ծաղիկ պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ ինչմնի պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ նունենի պիտէր ծաղկունակ։
Թագաւորին ծաղիկ պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ ինչմնի պիտէր ծաղկունակ.
Ծաղիկ համասփիւռ պիտէր ծաղկունակ։
Թագաւորին ծաղիկ պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ ինչմնի պիտէր ծաղկունակ.
Ծաղիկ պրաբեռն պիտէր ծաղկունակ.
Թագաւորին ծաղիկ պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ ինչմնի պիտէր ծաղկունակ.
Ծաղիկ նունուփար պիտէր ծաղկունակ։
Թագաւորին ծաղիկ պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ ինչմնի պիտէր ծաղկունակ,
Ծաղիկ ոսկեծաղիկ պիտէր ծաղկունակ։

Վերջապէս գովաբանները դիմում են Թագաւորի ծնողաց և ազգականներին հետևեալ երգով՝

Գնացէք, ասէք Թագւորահէր, Թագւորահէր,
Տառդ գոված է.
Եզ մի խորվու, տիկ մի գինի
Տառ գովողինն է։
Գնացէք ասէք, Թագւորամէր, Թագւորամէր,
Տառդ գոված է.
Սել մը սեղան, խոյ մը խորվու
Տառ գովողինն է։
Գնացէք ասէք, Թագւորաքուր, Թագւորաքուր,
Տառդ գոված է.
Ուլ մի խորվու, գաւ մի գինի
Տառ գովողինն է։
Գնացէք ասէք, Թագւորահարս, Թագւորահարս,
Տառդ գոված է.
Չորս ջուխտ գուլպայ մի մահրամայ
Տառ գովողինն է։
Գնացէք ասէք, Թագւորաղբէր, Թագւորաղբէր,
Տառդ գոված է.
Երկու ճնճուղ, մէկ գարէ հաց
Տառ գովողինն է։
Գնացէք բերէք սինով սեղան,
Գաւով գինի, ջուխտ գաթաներ,
Նախշուն գուլբէք,
Տառ գովողին խալաթ տուէք։

Տառ գովողներն ստանում են ձուաձեղ, հալուա, գինի, սեր, և այլ ուտելեղէն։ Ազափները ծառը զգուշութեամբ պահում են ապահով տեղ, որպէս զի աղջկունք չգողանան և տըղայոց վերայ չծիծաղեն։

Շամախու գաւառում, ուր կան 21 մեծ և փոքր հայ գիւղեր Ղարաբաղի, Թաւրիզի, Սպահանի գաղթականներ, չունին հարսանիքի ժամանակ այն սիրուն հանդէսները, որ տեսնում ենք Բասենի, Շիրակի և կամ Դարալագեազի գիւղերում։ Սակայն այստեղ էլ հայ ժողովուրդը զուրկ չէ կրօնական զգացումներից. այստեղ էլ փեսան և հարսը իւրեանց ապագայ յաջողութիւնը և բարօրութիւնը յանձնում են տեղական ուխտա-

տեղերի բարեխօսութեան, ուխտատեղիների, որոնք կազմում են մի ծառի տակ բազմեցրած մի տափարակ քար, կամ մի քանի հասարակ քարեր իրար վերայ դարսոտած։

Հէնց հարսանիքի սկզբում փեսան առանձին, շրջապատուած իւր ազաբներով—մակարներով-զուռնայի նուագածութեամբ և հարսն առանձին, շրջապատուած երկու հասակակից աղջիկներով և երիտասարդ հարսներով, ուխտ են գնում իւրաքանչիւրն իւր գիւղի մօտի սրբատեղերը, ջերմեռանդութեամբ աղօթում են, մոմ են վառում, խունկ են ծխում, համբուրում են անպաճոյճ քարերը և դառնում են տուն։ Եթէ գիւղի շուրջը կան մի քանի ուխտատեղիներ, ոչ մինը զանց չեն անում, բոլորին էլ կարգով այցելում են։

Այսպէս, օրինակ, Ջարգեարան գիւղում ուխտ են գնում «Խաչի Սուրբ» կոչուած տեղը, որ գիւղից դէպի արևելք Ամրաքիւ լերան ծառախիտ անտառի մէջն է։ Բահլիան գիւղում այցելում են «Նահատակի» ուխտատեղին, որ գիւղի եզրում, բարձրադիր բլուրի վերայ է, հասարակաց հանգստարանի մէջ։ Քեավանդի գիւղում հինգ սրբատեղիք կան, 1. «Դալլաքի բաղի նահատակ», 2. «Մուսիանց սուրբ», 3. «Ռուշանենց կամ քեօխենց սուրբ», 4. «Սրբի Բաղ» և 5. «Թեղի տակի սուրբ»։ Այսպէս էլ միւս հարևան գիւղերում։

Մինչև այժմ խօսում էի գլխաւորապէս փեսայի նախապատրաստութեան մասին։ Այժմ խօսեմ թէ ինչ նախապատրաստութիւններ և հանդէսներ են կատարւում աղջկայ, այսինքն նորահարսի տանը։

Հին Նախիջևանում և հին Ջուղայում, շաբաթ երեկոյին հարսանիքի երկրորդ օրը, հասակակից երիտասարդ աղջիկունք հարսնացուին շրջապատելով հինա են դնում նորա ձեռքերի վերայ, ներկելու նրանց։ Հետևեալ օրը, կիւրակէ, թագաւորը, քաւորը, խաչեղբայրը, ազափբաշին, փառ մոմերը ձեռքները, տանում են հարսի տունը նոր հանդերձը։

Հանդերձը հագցնելուց յետոյ հրաւիրում են քաւորին որ հարսի գօտիկը կապէ։ Նախ քաւորը իւր գդակը ծածկում է հարսի գլխին և քամարի երկու ծայրից բռնած՝ երեք անգամ

*անց է կացնում Հարսի գլխից և ոտքերից, ասելով «օխտը տղայ բերես, մի աղջիկ» և ապա կապում է քամարը նորա մէջքը և նուէր տալի Հարսի գլուխ կապողին, ու Հեռանում է կանանց բաժնից։*

*Այս տեղ գոքանչը նոր մոմեր է դնում փեսայի և միւսների ձեռքում, նուիրում է փեսային, ըստ կարողութեան, ժամացոյց, կամ երեքին էլ մի մի մետաքսէ Թաշկինակ, դնում է նորա առաջ խոնչա զանազան ուտելեղէններով (Հաւ, Հալուա, գաթայ վարազածածկ կամ կարմիր ձու և այլն, որ ազափբաշին իսկոյն և. եթ ժողովում, տանում է միւս օրը այգում վայելելու Համար։*

*Դաւալու գիւղում Խոր վիրապի մօտ՝ Հարսի քամարը կապում է Հարսի եղբայրը, առանց գլխարկ դնելու Հարսի գլխին, իսկ քաւորը ներս է Հրաւիրւում միայն փող նուիրելու գլուխ կապողին։*

*Դարալագեազի գաղթական Հայերի մէջ, կիւրակէ օրը, Թագաւորը քաւորի, ազաբների և բոլոր իւրայինների Հետ զուռնայով գնում են Հարսի տունը Հարսին բերելու։ Եթէ Հարսը մի այլ գիւղումն է, այն ժամանակ յիշեալ անձինք գնում են ձիանց վերայ, Հրացաններ և ատրճանակներ արձակելով և ձի արշաւելով։ Երբ մօտենում են Հարսի գիւղին՝ Հարսնքաւորներն աշխատում են փայլել արտաքինով։ Զուռնայի նուագածութեամբ նոքա շատ արագ արշաւում են ձիանց վերայ, ճարպիկ շարժումներ են անում, Հրացաններ արձակում, մի խօսքով՝ աշխատում են գիւղի ուշադրութիւնը իւրեանց վրայ դարձնել։ Սոքա արագութեամբ մօտենում են գիւղին և նորից ձիու գլուխը Թեքում ու նոյն արագութեամբ յետ արշաւում դէպի զուռնաչիները, որոնք միւս Հանդիսականների Հետ յետևից կամաց յառաջ են գալի։ Ձիարշաւի ժամանակ զուռնան նուագում է, այդ կողմերում սովորաբար «Քեօր օղլու» յայտնի եղանակը։ Ինչ կասկած որ գիւղացիք մեծ և փոքր դուրս են գալի նայելու։*

*Սակայն պէտք է ասել որ այս ձիարշաւը կատարւում է ամենայն տեղ։ Նոյն սովորութիւնը մենք տեսնում ենք*

Շիրակում, Բասենում, Երևանի կողմերում, Ղազախում և այլուր։

Աղջկայ տունը շինում են *թախթ* Թագաւորի նստելու համար։ Աղջկայ հայրը նուիրում է Թագաւորին Թաշկինակ կամ քիսա և կամ այլ իր և նուէրը կախում է Թագաւորի գօտկից երևալու համար։ Նոյնը նուիրում են և քաւորին։

Եթէ Թագաւորամայրը նոյնպէս եկել է հարս տանելու՝ նորա մասին երբեմն ասում են զուարճանալու և ծիծաղելու համար հետևեալ խօսքերը.

Խնամի, դու խոշ ես եկել,
Դարդակ ու բոշ ես եկել,
Երկու բլոճ ես բերել,
Էն էլ ճամբին ես կերել.
Բերանդ է կանանչ կապայ,
Թևերն ու փէշը ծակ ա.
Խնամի, դու խոշ ես եկել,
Դարդակ ու բոշ ես եկել։

Հացկերոյթից յետոյ հագցնում են հարսի հանդերձը։ Հագցնում է մի կին, որ հարսի գլուխը չէ կապում մինչև քաւորը նուէր չշնորհէ նորան։ Գլուխն յարդարելու ժամանակ զուռնան նուագում է. աղջկունք պարում են, իսկ հարսը տխուր լալիս է։ Ոչ մի երգ չեն երգում։

Ապա մօտենում է Թագաւորահայրը և կապում է հարսի քամարը երեք անգամ անցկացնելով նորա գլխից, մէջքից և ոտից։ Հարսնահայրը նուիրում է իւր խնամուն մի գտակ ու ինքը նորանից ստանում է դրամական նուէր։

Աղջիկը (հարսը) եօթն անգամ պտտւում է հայրական Թոնդրի շուրջ, մի անգամ ծնկաչոք համբուրում է Թոնդրի շուրթը, համբուրում է հօր ոտքը, մօր ձեռքը, տան շեմի դետինը, դրսի դրան շրջանակը և հրաժարական է տալի հայրական տանը, մայրական օջախին։

Սազանդարները կամ զուռնաչիները բռնում են շեմը և չեն Թողնում որ հարսն անցնի, որպէս զի հարսի հայրը նուէր տայ նորանց։ Նուէրը կոչւում է *դուռբռնելէ*։

Երկու աղջիկ, որ ասւում են կըշտի քիւր (կողքի քոյր), իսկոյն բռնում են հարսի երկու ձեռքը, որ արանքով մարդ չանցնի և այդպէս պահում են նորան մինչև հարսանիքի վերջը։

Ազափները և թագաւորի կողմի մարդիկ, դուրսը կանգնած, դիտմամբ գոչումներ են անում «ճինինի, ճինինի, հարսը տարան», որպէս զի բարկացնեն հարսի ծնողաց և բարեկամներին։

Այդ հրաժարականի, լացի, աղմկի և ուրախութեան ժամանակ ազափներից մինը, որ կոչւում է *աղուէս*, ընկնում է հարսի հօրանց հաւերի ետևից և ծածուկ աշխատում է բռնել նորանց և տանել, որպէսզի յետոյ ազափները ուտեն, քէֆ անեն։

Այստեղ այդ անձը հաւագողութեան համար կոչւում է *աղուէս* և այս բառով մի անձնաւորութիւն հարսանիքի ժամանակ *ամենայն տեղ* հայերի մէջ կոչւում է *աղուէս*, որի պատճառը շատ շատերը չգիտեն. բայց շատ տեղ էլ աղուէսը հաւ չէ գողանում, այլ լրաբեր է հարսանիքի ժամանակ։

Թագաւորը, ձեռի թաշկինակով մի խնձոր փաթթած, սեղմում է միշտ իւր շրթունքները նորանով։ Եկեղեցին պսակի գնալու ժամանակ աղուէսներից մինը իւր հետ տանում է մի դաւաթ գինի և մի բաժակ։ Իւրաքանչիւր հանդիսական իրաւունք ունի գինով բաժակը մօտեցնել թագաւորի բերանին ու ասել. «Լիսը Լիսաւորչին, հաւատն է Քրիստոսին, օրհնեալ Աստուած, անիւշ, անիւ՜՜՜շ, անիւշ» և թագաւորը անձայն անժպիտ, խոնարհ, սնտրտունջ, մի կաթիլ բերանն է առնում ու խնձորը նորից սեղմում շրթունքներին։

Ղազախում թագաւորը ազափներով, բարեկամներով, զուռնայով գնում է հարսի տունը, այն գիշերը ընթրիք են անում, հարսի *բաժինը* (օժիտը), որ լինում է սովորաբար գիւղի բաներ, օրինակ. կարպետ, խալիչա, թոկ, դօշակ, վերմակ, բարձ, ձիու զարդն, խուրջին, ջուալ, պղնձէ կուժ, պղնձէ ամաններ և այլն, մի առ մի ցոյց են տալի հանդիսականներին և ամեն կողմից լսւում է «Աստուած շնահաւոր անի, շէն կենայ»։

Եթէ փեսան ուրիշ գիւղից է գալիս, նա նոյնպէս շրջապատուած է լինում խաչ եղբայրով, (որ թուրը ձեռին միշտ անանջատ լինում է թագաւորի մօտ և շրջում է նորա հետ), ազափներով և բարեկամներով։ Դեռ սոքա կէս ճանապարհում *աղուէսը* առաջուց արդէն լուր է բերում հարսանքաւորների մօտենալու մասին։ Գիւղին մօտեցած՝ ձիարշաւ են սարքում, հրացաններ արձակում, ճարպիկութիւններ անում։ Սոքա իւրեանց հետ բերում են աղջկայ գիւղի ազափների համար ուտելիք և ըմպելիք, որ կոչւում է *ազափանայ*։

Երբ աղջիկը հօր տանից պէտք է դուրս գայ, այդ տեղ կատարւում է մի շատ սրտաշարժ տեսարան։ Զարդարուած նորահարս աղջիկը, շրջապատուած իւր ընկեր աղջիկներով, զուռնայի նուագածութեամբ բազմաթիւ հանդիսականների առաջ ծանրաքայլ գնացքով պտտւում է տան օջախի շուրջը, ծնկաչոք համբուրում է օջախի քարը, դուռը, տան շեմը, պտտւում է թոնրի շուրջը և ծնկաչոք համբուրում է թոնդրի շուրթը և ապա համբուրում է ծնողաց ձեռքը, որ վերջին հրաժարականը տայ։ Այս տեսարանը Ղազախի Ուզունթալա գիւղում, դեռ ևս իմ մանկական ժամանակի յիշողութեանս մէջ խորին տպաւորութիւն է թողել։

Պսակ գնալու ժամանակ թագաւորը գնում է առաջից, նորա կողքին խաչեղբայրը իւր անբաժան թուրը ձեռին, իսկ մի քայլ թագաւորի յետևից գնում է հարսը երկու թևը բռնած հարսնեղբայրը և քոյրերը։ Հանդիսականները շրջապատում են դորանց և զուռնան ամէնի առաջ մեղմ եղանակով «սուսաւոտ լուսոյի» նման նուագելով ծանր քայլերով յառաջ է շարժում բազմութիւնը։

Ճանապարհի վերայ եղած տներից իսկոյն և եթ անխտիր կերպով դուրս են բերում ձուաձեղ և գինի և հիւրասիրում են ազափներին և միւսներին։ Ազափները երբեմն թագաւորի բերանում դնում են ձուաձեղի կտոր, որ ինքն իրաւունք չունի վերցնելու։ Հէնց որ հասնում են եկեղեցու դուռը, զուռնան իսկոյն և եթ կտրում է իւր ձայնը մինչև հարս ու փեսայի եկեղեցուց դուրս գալը։

Երևանի շրջակայ գիւղերում, երբ աղջկանը հագցնում են շորերը, գլուխ կապող կինը թագցնում է հարսի քամարը և չէ տալի քաւորին, որպէս զի սորանից դրամական նուէր ստանայ։ Երբ քաւորը կապում է հարսի քամարը, ասում է. „Առջնէկդ տղայ լինի“։ Քահանան հարս ու փեսային ձեռք ձեռքի տուած կանգնեցնում է և ծնողքը շնորհաւորում են։

Ագուլիսում, կիրակի առաւօտ, ազափբաշին մակարներին (ազափներին) մոմեր է բաժանում, իսկ ազափբաշու կինը աղջկանցն է բաժանում մոմ։ Ազափբաշին զրահաւորուած իւր իշխանական զաւազանով, նայրին թաշկինակ կապած, բոլոր խումբն առած, աղմուկով և նուագածութեամբ տանում է հարսի տունը։

Հարսի հանդերձը հագցնում է քաւորի կինը, իսկ քամարը կապում է հարսի եղբայրը՝ նախապէս երեք անգամ անցկացնելով գլխով, և ոտքերի տակից հանելով։ Ապա աղջկունք և կանայք համբուրում են հարսին և դուրս բերում փեսայի մօտ։

Հրաժարականի ժամանակ աղջկանը պտտացնում են տան բոլոր մասերը, սենեակները, ներքնատունը, թոնդրատունը և այլն, բայց առանց ծնրադրութեան և համբոյրների։ Տնից դուրս գալու րոպէին տան ծառան ծածկում է դուռը և թագաւորից նուէր ստանալով՝ նորից բանում է։

Բարեկամները համբուրում են աղջկան, սա էլ համբուրում է նորանց ձեռքը. ծնողքը լալիս են և հանդէսը շարժւում է դէպի եկեղեցի։ Զուռնաչիք կանգ են առնում, երեսները դարձնում են դէպի հարսնահօր տունը, նուագելու եղանակը զրուզրոցի փոխելով՝ բարեկացնում են ծնողաց ու բարեկամներին։

Սանամայրը իւր հետ բերած շաքարի կտորը և կանաչ կարմիր թելը յանձնում է քահանային, որ սա թելից շինէ հարսի համար նարօտ, իսկ շաքարը ձգի աղջկայ տնից բերած գինու բաժակի մէջ։

Հին Նախիջևանի գիւղերում պսակ գնալու և պսակից

դառնալու ժամանակ հարսն ու փեսան բռնում են Թաշկինակի երկու ծայրից, որ արանքով ոչ ոք չանցնի։

Բասենի, Շիրակի և Կարսայ գիւղերում նախքան հարսնառների գալը և հարսին տանելը, հարսի հասակակից աղջկունք մէն մենակ հարսին տանում են աղբիւրի մօտ, ուր նորա գլուխը լուանում են, սանտրում են և երբ Իրիցկինը կապում է նորա գլուխը, աղջկունք երգում են նախ և առաջ հետևեալ տաճկերէն երգը։ Նա կոչւում է «գլուխ գովալ»։

«Աղլամա, աղլամա,
Գեալին, աղլամա,
Իրիցկին, Իրիցկին,
Բաշը բաղլամա։

Անամ չըխսըն եայլալարի եայլասըն,
Իչսըն սովուղ սուլար՝ գեօնկլի ագլասըն,
Անամն կըզ'ը վար, բանի նէյնասըն,
Ագիլ՝ դաղլար, ագիլ, անամ գեօրընսըն։
Չաքտիլար, չաքտիլար օջաղն դաշի,
Ղուրդիլար, ղուրդիլար դիւգինըն աշի.
Չաղըրըն, չաղըրըն կովում ղարդաշի,
Ջէն անայ, շէն բաբայ, աւըն շէն օլսըն,
Ըշտայ բան գեդարամ՝ երըն ենգ օլսըն։
Աթլադըմ, աթլադըմ, չըխտըմ էշիկի,
Ղըրըլսըն, ղըրըլսըն ղըզըն բէշիկի,
Սուփրադայ, սուփրադայ ղօյդըմ ղաշըղի,
Ջէն անայ, շէն բաբայ, աւըն շէն օլսըն.
Ըշտայ բան գեդարամ՝ երըն ենգ օլսըն։
Անամըն Թիւթսիւսի ագրիճա Թութար,
Ոթամըն սուփրասը, մէյդանի Թութար,
Ղըզըն ուզանգըսի քիմլարդան Թութար,
Ջէն անայ, շէն բաբայ, աւըն շէն օլսըն,
Ըշտայ բան գեդարամ, երըն գէն օլսըն։
Չամ բաշընդա չրայ եախտըմ, եանմատի,
Եեագ բաբամայ Լլչի սալդմ, գեալմադի.
Ղարդաշ քիւչիւգ իկդի, գեալայ բիլմադի,
Ջէն անայ, շէն բաբայ, աւըն շէն օլսըն։
Ըշտայ բան գեդարամ, երըն գէն օլսըն։

—

Ցելէ երեկուան քամին, ցելէ երեկուան քամին,
Բազըրգեան մտել է գեամին, բազըրգեան մտել է գեամին.
Աղջի, հարսնառդ եկաւ վերի կալերով,
Չինայ բերին քեզի թղթի ծալերով,
Ել հագի, ել կապէ. հարսնառդ եկեր է։
Աղբորդ խաբեցին ջուխտմ ճըգմով.
Քրոջդ խաբեցին ջուխտմ փապուճով.
Հօրդ էլ խաբեցին լիւլըմ թիւթիւնով.
Մօրդ էլ խաբեցին թուղթմ պուռնութով։

Հարկաւոր եմ համարում վերոյիշեալ տաճկերէն երգի թարգմանութիւնը դնել այստեղ, նոյնպէս և միւս ստորև յիշեալ երգերի թարգմանութիւնը իւր տեղում։

«Մ'ի լար, մի լար,
Հարս, մի լար,
Իրիցկին, իրիցկին,
Գլուխը մի կապիր։

Մայրս դուրս գայ ամարանոցներ՝ վայելի,
Խմի սառը ջրեր, որ սիրտը կանգնի,
Մօրս աղջիկ ունի, էլ ինձ ինչ անի,
Թեքուլէք, սարեր, թեքուլէք, մայրս երևի։
Քաշեցին, քաշեցին օջաղի քարը,
Սարքեցին,սարքեցին բրինձով փլաւը,(հարսանիքի կերակուր)
Կանչեցէք, կանչեցէք բարեկամիս, եղբօրս,
Շէն հայր, շէն մայր, տունդ շէն մնայ,
Ահա ես գնում եմ, տեղդ լայն մնայ։
Ձիաւորուեցի, ձիաւորուեցի, դուրս եկայ,
Կոտրուի, կոտրուի աղջկայ օրօրոցը.
Սուփրի մէջ, սուփրի մէջ թողի գդալը.
Շէն հայր, շէն մայր և այլն։
Մօրս ծուխը ծուռը կըծխի,
Հօրս սեղանը հրապարակ կըբռնի.
Աղջկայ ասպանդակը ո՞վ կըբռնի,
Շէն հայր և այլն։
Շամածառի գլխին հրագ վառի, չվառուեց,
Բէգ հօրս դեսպան ուղարկեցի, չեկաւ,
Եղբայրս փոքր էր, գալ չկրցաւ,
Ահա ես գնում եմ տեղդ լայն լինի։

Ապա աղջկունք երգում են այլ եղանակով հետեւեալ երգը նորահարսի մօր, քրոջ, մօրաքրոջ մասին, որոնք այդ հանդի-սին սովորաբար ներկայ չեն լինում։

Համամ ջուպպասի,
Թօլսաթ վալասի,
Զաղըրըն անասի՝
Գեալսըն սարըլսըն
Բոյննայ՝ աղլասըն,
Եօլայ սալսըն։
Համամ ջուպպասի
Թօլսաթ վալասի,
Զաղըրըն բաջըսի,
Գեալրսըն սարըլսըն
Բոյննայ՝ աղլարսըն,
Եօլայ սալսըն։
Համամ ջուպպասի,
Թօլսատ վալասի,
Զաղըրըն խալասի,
Գեալսըն սարըլսըն
Բոյննայ՝ աղլասըն,
Եօլայ սալըսըն։

Ահա երգի հայերէն թարգմանութիւնը.

«Բաղանիքի վերարկու,
Թօխաթ քաղաքի մետաքսէ թաշկինակ,
Կանչեցէք մօրը,
Գայ փաթաթուի,
Վզովը, լայ,
Ճանապարհ ձգի։»

Նոյնը կրկնում է քրոջ և մօրաքրոջ (խալա) մասին։

Երբ ուստի մօտ «գլուխ գովալու» հանդէսը կատարւում է, այդ միջոցին արդէն հարսնառները զուռնայով, աղմկով մօտենում են գիւղին։ Նորանց առաջ դուրս են բերում գինի, արաղ, հիւրասիրում են նորանց և ապա տանում են ուղղակի ուստի մօտ, ուր որ հարսն է։

Հարսին շրջապատող աղջկունք այդ տեղ նորից մի երգ են

երգում տաճկերէն, որի մէջ բացադրելով աղջկայ ազգականնե-րի բացակայութիւնը, նկարագրում են հարսի դլութիւնը։

Արմըդի ալ դըր բունըն,
Ջիգիթը քեալ դըր բունըն,
Աթասը եօխ աղլասըն,
Կարդաշը լալ դըր բունըն։
Արմըդի ալ դըր բունըն.
Ձիգիթը քեալ տըր բունըն,
Բաջըսի եօխ աղլասըն,
Գալինի լալ դըր բունըն։
Օրմըդի ալ դըր բունըն,
Ձիգիթը քեալ դըր բունըն,
Խալասի եօխ աղլասըն,
Բիբիսը լալ դըր բունըն։

Ահա սորա թարգմանութիւնը.

Սորա խնձորը կարմիր է,
Սորա սերմը խակ է,
Հայր չունի որ լայ,
Եղբայրը սորա համր է։
. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
Քոյր չունի որ լայ,
Սորա հարսը համր է։
. . . . . . . . . . .
. . . . . . . . . . .
Մօրաքոյր չունի որ լայ,
Սորա տատը համր է։

Ապա զուռնան նուագում է, աղջկունք մի տեսակ պա ր են բռնում, որ կոչւում է *Թնիւմախ* և դուրս են բերում հարս-նացուին։ Տղայքը ձայնում են *շաբաշ*։ Որդէն երեկոյեան դէմ է լինում, որ բոլոր հանդիսականները հարսին առած՝ ծանրա-քայլ շարժւում են դէպի հարսնահօր տունը։

Այս տեղ պէտքէ յիշել որ այն տեղի գիւղերում հազիւ է գտնւում այնպիսի մի տուն, որ իւր մեծութեամբ կարողանար տեղաւորել իւր մէջ գիւղի բոլոր հրաւիրուածներին, ուստի այդ պէտքի համար մաքրում՝ յարմարեցնում են մեծ գոմեր։

Քաւորը, որ միշտ լինում է հարսնառների շարքում, բերում է իւր հետ հարսի հանդերձը և հինա, թղթի մէջ փաթըլթած և սինու մէջ դրած։ Հինայով սինին Ուստան դընում է իւր գլխի վերայ և առաջինը ինքն է պարում. ապա տալիս է միւս աղջկանց, որոնք հերթով պարում են և վերջը սինին դնում են քաւորի առաջ, որպէսզի նա 15, 20 կոպէկ նուէր ձգի մէջը՝ պարող աղջկանց համար։ Այդ գիշերը աղջկունք հինով ներկում են իւրեանց և հարսի ձեռքերը։

Հետևեալ օրը, աղջկայ հայրը ճաշ է պատրաստում հիւրերի համար, կերակուր պատրաստող կինը պղնձների բերանը չէ բանում և կերակուր չէ բաժանում, մինչև քաւորը նորան նուէր չանի, 20 կոպէկից մինչև 1 ռուբլի։

Ճաշը վայելելուց յետոյ, աղջկայ հայրը հանդիսականների առաջ թափում է բոլոր օժիտը, ինչ որ պատրաստել է իւր աղջկայ համար, որ կոչւում է ջհէզ։ Ջհէզը գիւղերում սովորաբար լինում է վերմակ, բարձեր, ճզուլպաներ, մարբաշ, խուրջին և այլն։ Կանչողը հատ հատ ցոյց է տալի հանդիսականներին, իրար վերայ դարսում և վրան նստելով չի վերկենում տեղից, մինչև նուէր չստանայ (երբեմն մինչև 10 ռուբլի) փեսահօրից հարսնահօր օգտին։

Տղամարդկանց մօտ ջհէզը զննելու միջոցին՝ կանանց բաժնում սովորաբար գիւղի իրիցկինը, եթէ սա չկայ՝ մի այլ կին կապում է հարսի գլուխը և նուէր է ստանում քաւորից, որ ասւում է *գլօխկապելիք*, և գօտիկ կապելու համար նոյնպէս նուէր, որ է *գօղելկալ*. իսկ աղջկունք, որ ըլուններից փնջիկ են շինում հարսի գլուխ զարդարելու համար, նոյն պէս նուէր են ստանում քաւորից-*փնջի փարա*։

Ուրիշ հայ երկրներում թագաւորն ինքն է գնում իւր հարսնացուն բերելու և առանց պսակուելու աղջիկը չի դուրս գալ գիւղից. իսկ այստեղ, Բասենում և շրջակայքում փեսան իւր խուղում սպասում է հարսին, որ պէտք է բերեն հարսնառները։

Հրաժարականի լոպէին աղջիկը համբուրում է հօր, մօր, եղբօր և միւս բարեկամների ձեռքը, բայց հօր տան օջախը,

Թոնդիրը, իւր առաջին սննդավայրը համբուրելու սովորութիւն չկայ։ Աղջիկը հենձնում է ձի և նորան ուղեկցում է նորա եղբայրը, որ այդ դէպքում կոչւում է *մաղար*։

Երբ փեսայի գիւղին մօտենում են՝ մաղարը, այսինքն հարսնեղբայրը, հանում է հարսի տակից թամբի բարձը և տալիս է հարսնառներից մինին, որ կոչւում է *աղուէս*։

Աղուէսը բարձն առած շտապում է դէպի թագաւորի տունը։ Բայց աղուէսն ամենայն զգուշութեամբ և թագաւորին շրջապատող ազափներից խիստ ծածուկ, բարձը յանկարծ դընում է թագաւորի ոտաց տակը, որ այդ միջոցում ազափներով շրջապատուած *կանգնած է* և անպատճառ կանգնած իւր տան երդիկի բարձրութեան վերայ, սպասում է հարսի գիւղը մտնելուն։

Եթէ աղուէսի անզգուշութիւնից կամ անշնորհութիւնից ազափները բարձը նկատեն նախքան թագաւորի ոտաց տակը դնելը, այն ժամանակ աղուէսին՝ դուարճութեան համար խիստ գանակոծում են։

Թագաւորի ոտաց տակ բարձի դնելը նշան է թէ հարսը խոնարհութեամբ իւր գլուխը դնում է իւր ամուսնու ոտաց կամ իրաւանց տակ։

Թագաւորը հրամայում է ճարպիկ աղուէսի ձիու վզից կախել թաշկինակ, կամ երեսի սրբիչ կամ մի զոյգ գուլպա և այլն, իսկ ինքն թագաւորը իւր տեղը բարձի վերայ *անշարժ կանգնած* մնում է մինչև հարսի ձիուց իջնելը։ Հարսը երբէք չէ իջնում թագաւորի տանը, այլ ընդունում են նորան քաւորի կամ թագաւորի ազգականներից մինի տանը։ Թագաւորը իրաւունք չունի գնալ նորա տեսութեան, այլ գնում են նորա կողմից բարևելու նորա մայրը, քոյրը և այլ բարեկամ կանայք և միմիայն կանայք և ոչ տղամարդիկ։

Հարսնեղբայրը միշտ անանջատ մնում է իւր քրոջ մօտ։ Գիւղ մտնելու ժամանակ հարսի դաւակին նստացնում են մի երեխայ և հարսնեղբայրը երեխային իջեցնելու կամ հեռացնելու համար ընծայում է նորան մի ջուխտ գուլպա։

Տան տէրը, որի մօտ իջնում է հարսը, ճաշ է ուտեցնում

հիւրերին։ Հարսը գիշերը մնում է այդ տանը և շրջապատւում է աղջիկներով և երիտասարդ հարսներով, որոնք գիշերը աշխատում են ագափների ոտամանները կամ գօտիկ կամ այլ հագուստ գողանալ, իսկ ագափները, ընդհակառակը, աշխատում են գողանալ աղջկանցից որև է հագուստ։

Վերոյիշեալ եղելութիւնը պատահում է այն ժամանակ, երբ տղան և աղջիկը որոշ որոշ գիւղերից են. իսկ եթէ երկուսն էլ մի գիւղումն են, այն ժամանակ չեն լինում ոչ աղուէս, ոչ բարձ, ոչ հարսի գալուստ և այլն։ Այլ սովորական կարգով թագաւորը իւրայիններով գնում է հարսի մօտ և այն տեղից եկեղեցի պսակուելու։

Առաւօտը թագաւորը գնում է հարսի մօտ այն տունը, ուր նորան երեկեան օրը ընդունել են և այն տեղից իբրև մի գիւղացի, հանդիսականներով շրջապատուած, նուագածութեամբ գնում են եկեղեցի պսակուելու։

Եկեղեցի գնալու ժամանակ հարսը գնում է թագաւորի յետևից և թաշկինակի մի ծայրը բռնած, որի միւս ծայրը կապած է թագաւորի գօտկից, որպէսզի երկուսի արանքով, նախքան պսակը, ոչ ոք չանցնի, որ շատ չարագուշակ նշան է։ Պսակուելուց յետոյ նոքա գնում են արդէն իրար կողքի և առանց թաշկինակի։

Պսակուելու ժամանակ տղան ծածուկ աշխատում է հանել աղջկայ մատից մատանին և աղջիկն էլ աշխատում է չթողնել։

Եկեղեցուց դուրս գալով ամէն տան մօտով որ անցնի հարսանիքը, ամէն ոք թէ բարեկամ, թէ օտար, հարսի գլխին ձգում են զանազան կտոր (չիթ, թաշկինակ և այլն), իսկ ագափներին ոչինչ չեն տալիս, ինչպէս անում են այդ այլ տեղերում, բայց պսակ գնալու ժամանակ։

Եկեղեցուց մինչև թագաւորի տունը զուռնայի նուագածութեամբ գանգաղաքայլ ընթանում է հանդէսը և պարում են հարսնիք, աղջիկներ և տղայք։ Թագաւորի տան առաջ պատրաստած է լինում սեղան զանազան ուտելիքներով ագափների համար։ Պարելով ընդառաջ են դուրս գալի թագաւորի

մայրը, հայրը. և վերջինիս երեսը, զուարճութեան համար, ալիւր են քսում, թաղիքի կտոր են դնում գլխին, քթոց են անցկացնում վիզը։ Սրանից անցնելու ժամանակ հարսի գլխին թուր են բռնում։

«Կանչը», որ նշանակում է յիշատակել զանազան նուիրատուութիւններ հանդիսականների կողմից, մշեցոց մէջ լինում է երեկոյեան ընթրիքին, իսկ Բասենում լինում է պսակից վերադարձի ժամանակ, թագաւորի տան առաջ, ուր նորապսակները պարտաւորուած կանգնում են մինչև կանչի վերջը։

Նորապսակները տուն ներս մտնելուց յետոյ աւելը տալիս են հարսի ձեռքը, որ տան յատակը փոքր ինչ աւելում է զանազան կողմերի վերայ։ Քահանան «Ծագմանն» երգելիս թագաւորին և քաւորը իրար կողքի և նոցանց յետևից հարսը երեք անգամ պտտւում են թոնդրի շուրջը, ու իսկոյն շերեփը և աղը տալիս են հարսի ձեռքը, որ շերեփով խառնի թոնդրի միջի դրած կերակուրը և աղ ձգի նորա մէջ։ Ապա հարսին տանում են վարագոյրի յետև։

Դարալագեազի Խաչիկ գիւղում, հարսը, պսակուելուց յետոյ՝ կրկին վերադառնալով թագաւորի հետ հօրանց տուն, առաւօտը թագաւորի հետ միասին, շրջապատուած ազափներով և այլ հրաւիրականներով, զուռնայի ուղեկցութեամբ, պտտւում է գիւղի մէջ, ուր բաղերում քիւրսիների վերայ պատրաստուած է լինում ուտելիք, խմելիք (գինի, արաղ, միրգ, ձուաձեղ։) Ուտում խմում են ամէնքը, իսկ հարսն ընդունում է *խալաթ* (նուէր). վերջը գնում է թագաւորի տունը, բայց ներս մտնել չէ ուզում առանց *ոտնափոխէքի*։ Սկեսրայրը ականջից բռնած մօտեցնում է նորան ձի, կով կամ երինջ կամ այլ անասուն իբրև նուէր, *ոտնափոխէք*, մականիրն իսկոյն նշանում են անասունը, այսինքն ականջի ծայրը կտրում են, և „հուշտ" անելով խրտնացնում փախցնում են փախկոտ անասունին և իրեանք ծիծաղում են։

Ապա օրահի կտուրից չոր մրգեղէն են ցանում հարսի գլխին և մանր երեխայք մեծ աղմկով և իրար հրելով ժողովում

*են։ Շեմում ոտաց տակ կոտորում են կաւէ աման և մակարները կանչում են „կոտրեց։“ Հարսը գնում է իւր տեղը, բայց մնում է կանգնած և չէ կամենում նստել, մինչև որ սկեսուրից խալաթ ստանայ։*

*Հին ժամանակ սովորութիւն կար, որ մետաքսէ թելերով պատած եղեգնեայ փոքրիկ խաչ տնկում էին խնձորի կամ նռան մէջ և դնում էին նորապսակ թագաւորի գդակի ծայրում, որ փոխարինում էր թագի։ Այժմ վերացել է։*

*Ղազախի Ուզանթալա գիւղում պսակադրութիւնից յետոյ, հարսը եթէ նա գնալու է մի այլ գիւղ՝ հանդիսականներով հանդերձ նորից վերադառնում է հօր տունը, ուր պատրաստութիւն տեսնելուց յետոյ նորան ձի են նստացնում, ու եղբօր կամ մօր ազգականի հետ, թագաւորի և նորայինների հետ ձիերով ընկնում են ճանապարհ։ Այստեղ էլ ազափները ձիարշաւ են անում, բայց քիչ, ըստ որում ուժերը պահում են իւրեանց գիւղը մտնելու համար։*

*Բայց եթէ հարսը մնալու է այն գիւղում, այդ ժամանակ պսակը կատարելուց յետոյ հանդէսը շրջւում է ուղղէն դէպի փեսայի տունը։ Դանդաղաքայլ գնացքին ուղեկցում են զուռնան, գիւղի երեխայքը, որոնք բղաւելով, ուրախանալով գընում են։ Փեսի տան սրահին հասած՝ հանդէսը փոքր կանգ է առնում, ընդառաջ են դուրս գալի փեսայի մայրը, քոյրը, հարսը և միւս կին ազգականները, մին մին մօտենում թագաւորին և հարսին և համբուրում են նորանց և պսակը շնորհաւորում։*

*Շատ զուարճալի է այդ տեղ, որ երբեմն ծերունի փեսահայրը սկսում է պար գալ, ճարպիկ շարժումներ անել, քաշքշել իւր կնոջը, որ նա էլ օրօր գայ, ուժով բռնում է կնոջը որ այնքան բազմութեան մէջ համբուրի, խախկ ու խայտառակ անի։ Հանդէսը առաւել զուարճալի անելու համար թագաւորի մակարները ալիւր են ցանում, քթոց են ծածկում թագաւորահօր գլխին, բայց նա առանց մազաչափ նեղանալու շարունակում է պարել, ուրախանալ։*

*Սրահումը հարսի գլխին ցանում են չամիչ և այլ չոր*

*մրգեղէն, որ մանր տղայք իրար հրելով ժողովում ուտում են։ Ձեմը անցնելիս խաչեղբայրը թուրը բռնում է թագաւորի գըլխին և թագաւորը կտրում է իւր ոտաց տակ դրած կաւէ ամանը և անցնում է։ Ապա հարսին տանում են կանանց բաժին։*

*Վաղարշապատի գիւղերում սկեսուրը տան հարսի շեմում, գլխին, դնում է մի կտոր հաց, իսկ տան ներսը՝ ալիւր տալիս են հարսի ձեռքը։*

*Հին Նախիջևանում, Հին Ջուղայում, Ագուլիսում, Վաղարշապատի և Բասենի գիւղերում հարսին հօր տանից դուրս բերելու և եկեղեցի տանելու խառը րոպէին հարսնեղբայրը աշխատում է համբուրել թագաւորի կողմից եկած հարսներին և այդ համբոյրը կոչւում է խնամապաչ։*

*Հին Նախիջևանում պսակից հանդէսը վերադառնում է ուղղակի թագաւորի տունը, ուր դիմաւորում և համբուրում են հարսին, թագաւորին և խաչեղբօրը, պարում են, երբեմն պարում է և թագաւորահայրը, որի երեսին այստեղ ևս ցանում են ալիւր, գլուխը անցնում են մաղ, հարսին տալիս են խալաթ և հրաւիրում են ներս։*

*Դուալու գիւղում, Խոր Վիրապի մօտ, հարսին եկեղեցուց բերում են փեսայի տունը, նորա առաջ պարում են, դուրս են բերում չոր մրգեղէն ափսէի մէջ, վրան խաչաձև դրած հացի երկու լաւաշ և սոցա վերայ տնկած խաչաձև մեղրամոմեր։ Պարելուց յետոյ մրգը տանում են խուռն հանդիսականների վերայ և լաւաշները դնում են հարսի գլխին և ներս տանելուց ու իւր տեղը կանգնեցնելուց յետոյ վերցնում են։ Ձեմում թագաւորի ոտաց տակ կաւէ պղուղ են դնում ոտով կոտրելու համար։*

*Ագուլիսում պսակատարութիւնից յետոյ նախ գնում են աղջկայ տունը, ճաշում են և ապա փեսայի տուն գնալու ժամանակ նորապսակների բարեկամները փողոցում սեղան են սարքում և հանդիսականներին հիւրասիրում են։ Թագաւորի ծառան (եթէ կայ) խալիչա է փռում նորապսակների ոտաց տակ և նոքա, վրայից անցնելով, փող են նուիրում ծառային։ Թագաւորի տան բակում աթոռների վերայ նստում են հարսն ու*

փեսան և ընդունում են լուրեանց բարեկամների շնորհաւորութիւնը և նուէրները (շալ. թաշկինակ, մետաքսէ կտոր և այլն) որ մատուցանում են պարելով ձեռքում բռնած։ Ապա հարսին տանում են կանանց սենեակը։

Երեկոյեան գալիս է հարսնեղբայրը, բերելով կերակուր հարսի համար, որ այդ օրը և հետևեալ օրը կերակուրն ստանում է իւր հօր տնից։

Երևանում և Վաղարշապատի գիւղերում պսակի ժամանակ, եկեղեցու մէջ, հարս ու փեսան աշխատում են իրարից յաջ մատանին և մինը միւսի ոտը սեղմել, ըստորում, նորանց կարծիքով, ով ում մատանին հանեց և ոտը սեղմեց, նա էլ կեանքի մէջ կիշխի միւսի վերայ։ Այս սովորութիւնը կայ և Դարալագեազի բնիկ հայ գիւղերում (Խաչիկ, Կնիշիկ, Արփա, Աղաւնաձոր և այլն)։

Թագաւորի տնից դուրս են բերում ձուաձեղ, հալուա, գինի, որոնց համը տեսնում են թագաւորը և քաւորը։ Հէնց այդ ժամանակ էլ խալաթ են նուիրում հարսին։ Թագաւորի մայրը և ազգական կանայք պարելով՝ բարևում են նորապսակներին, համբուրում են հարսին և թագաւորամայրը իւր նորապսակ որդու բերանը դնում է մի կտոր շաքար։

Ճեմով անցնելիս քաւորը թուրը բռնում է գլուխների վերայ և թագաւորի ոտների տակ փշրելու համար դնում է կաւէ ափսէ։ Քահանան շուրջառը ծածկած՝ իրարից ջոկում է հարսի և փեսայի ձեռքերը և հարսին տանում՝ կանգնեցնում են կանանց բաժնում փափուկ բարձի վերայ։ Այդ րոպէից քաւորը յանձնում է թուրը թագաւորին, որ պահում է իւր մօտ մինչև հարսանեաց վերջը։

Փեսայի բարեկամ կանայք հարսին խալաթ են տալի, որ նա համաձայնի նստել։ Խալաթը ժողովում է հարսի համար *հարսնաքիրը*, մի պառաւ կին հարսի ազգականներից, որ նորան ուղեկցում է և մնում է նորա մօտ մինչև հարսանիքի վերջը։ Բերում են հարսի բերած բաժինքը և կանանց մէջ մի առ մի գննելով՝ ասում են «խնամին չէն կենայ»․ կանայք պարում են, ուրախանում են և երեկոյեան ցրւում։

Դարալագեազի գաղթական հայերի մէջ, երբ հարսանեաց հանդէսը պսակից վերադառնում է Թագաւորի տունը, հարսի գլխին ցանում են չոր միրգ։ Բարեկամները սովորաբար ընդառաջ դուրս գալով բարևում են, իսկ ազափները ծիծաղելու և զուարճութեան համար երգում են հետևեալ երգը՝ դիմելով Թագաւորի մօրը։

Թագաւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Քէ դաստա գիւլ եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Կարմիր խնձոր եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր միչեր եմ բերել,
Քէ աչքի լուս եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Քէ ոժ (ոյժ) թազաթ (նոյնը) եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Քէ ծամ փետող եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Քէ աչք խանող եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Բերան ծռող եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Ջերեփդ խլող եմ բերել։

Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Պուճաղդ քանդող եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել.
Դլուխդ թագող եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Ինչեր մինչեր եմ բերել,
Քէ տնէ դուս խանող եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Քէ գեօլի ղազ եմ բերել։
Լեզուն կէս գազ եմ բերել։
Թագւորի մէր, դուս արի,
Տես քէ ինչեր եմ բերել,
Թոնդրին կոխող եմ բերել,
Ակէն խանող եմ բերել։

Տանը մօտեցած՝ զուռնաչին ստանում է իւր խալաթը։ Ստանում է խալաթ նոյնպէս և հարսնեղբայրը։ Նորապսակները ներս են մտնում տուն և տեսնում են, որ թագաւորի թախտին նստած է մի երեխայ, իսկ հարսի տեղում նստած է մի աղջիկ*) որոնք քաւորից մի քանի կոպէկ ստանալով հեռանում են տեղներից։ Սակայն հարսը մնում է կանգնած իւր տեղը, չէ կամենում նստել. գալիս է սկեսրայրը, խոստանում է նուիրել նորան՝ օրինակ մի կով և ապա թէ հարսը համաձայնում է նստել։

Երբ ամենքն էլ տեղաւորւում են և թագաւորը իւր քաւորով և ազափներով նստում է իւր թախտը, այդ ժամանակ սկսւում է *ճաշը*: Թագաւորի բարեկամները իւրեանց տներից բերում են թագաւորի համար նուէր, այն է երկու երեք գա-

*) Երեխայքը նստացնում են որ նորապսակները ծնընդաբեր լինի։ Խմբ.

թայ, մրգեղէն, եփած հաւ, և այլն և վրան փառած մեղրամոմեր։ Այդ նուէրը կոչւում է *ծաղ*։

Հէնց որ իւրաքանչիւր անգամ ծաղը դրսից բերւում է ներս, Թագաւորի երկու կողքին նստած *երկու* ազափներից մինը բացականչում է. «Վեաւ որ էկաւ, բարով էկաւ։ Թագաւորի ճրճկընե՛ր.»

—«Համմէ». իսկոյն պատասխանում է նորան միւս կողքի ազափը։ Ապա շարունակում է առաջինը, յիշելով ծաղ բերողի անունը.

«Ներսօն յիշայ, Թագւորին բարի,
‹Աստած իւրը տայ հազար բարի,
«Ոտն ոչխար, տկով գինի,
«Աստած Թագւորին օխտը որդի,
‹Օխտը որդու սեղան նստի,
«Կիւտանը դաշտը պանի,
‹Ձար կամը դուռը պատռուի,
«Ջա՜յ տունը շէն՝ հա՜յ տունը շէն‹›

Նոյն Դարալագեազի Ազատակ գիւղում նոյն խօսքերը կըրկնում են հետևեալ կերպով.

Մարկոսն ուզեց Թագաւորին բարի,
Աստած տայ ընդարը հազար բարի,
Օխտը որդու սեղան նստի,
Կիւտանը դաշտը բանի,
Ձար կամը դուռը պատռի,
Կատուն մըռընչայ,
Մուկը փըռընչայ,
Օխտը տարուայ փուշը կընանչայ,
Ջա՜յ տունը շէն, տունը շէ՜ն։

Ամեն մի ծաղ ներս մտնելիս բոլոր վերոյիշեալ խօսքերը նորից կրկնում են և ազափները ծաղերը վերցնում պահում են յետոյ վայելելու. այդ բոլոր ծաղերը միասին կոչւում են *Թագաւորի խազնա*։

Երեկոյեան լինում է մեծ հրաւէր։ Գիւղի իւրաքանչիւր տան մեծը հրաւիրւում է ընթրիքի և այդ երեկոյ, ընթրիքից անմիջապէս առաջ, լինում է *կանչ*, այն է որ իւրաքանչիւր

*հրաւիրուած իւր կարողութեան չափ մի գումարով նպաստում է թագաւորահօրը։ Մի մեծ սինի դնում են քահանայի և պատուաւոր հիւրերի առաջ, կանգնում է ճարպիկ դաւուլչին, ու ամեն մի նուիրած փող ձեռքում պտտցնելով օդի մէջ՝ յիշատակում է տուողի անունը և դնում է սինու մէջ։ Առաջին նուիրաբերութիւնը անում է քաւորը։*

*Կանչը վերջանալուց յետոյ սկսւում է ընթրիքը, որից յետոյ պարողները՝ արք և կանայք կազմում են մեծ շղթայ և մինչև ժամի 3—4 առաւօտեան պարում են 12 տեսակ պար, որոնց եղանակները նախ ծանր են և ապա աստիճանաբար արագանում են։ Պարերի տեսակները սոքա են։ 1. Ծանր գեօնդ. 2. Ծունկ կոտրուկ, 3. Մայմօ. 4. Երեք ոտ. 5. Մաշկէ. 6. Ձէօրօր. 7. Եարղեօզալ. 8. Սէթայի. 9. Թալափի. 10. Սիւզմա. 11. Եալլի. 12. Թռուկ։ Այս պարերի մանրամասն նկարագրութիւնը կարելի է կարդալ „Ճանապարհորդական նկատողութիւնք“ աշխատութեան մէջ Քաջբերունոյ։*

*Հին Ջուղայում կամ հին Նախիջևանում հարսանիքի վերջին երեկոյին լինում է կանչը: Այս տեղ էլ առաջինը նուիրում է քաւորը։ Կանչը կատարում է ազափներից մինր-ճարպիկը-որ իւրաքանչիւր նուէր յիշելիս դիմում է թագաւորի մակարներին (ազափներին) այս խօսքերով.*

*—Թագաւորի մակարնե՛ր։*

*—Ամէն, ամէն. պատասխանում են մակարները միասին։*

*– Աստուած ձեզ բարի ամէն. Աստուած սաղ սահի քաւոր աղէն, Աստուած նորա որդուն (կամ եղբօրը և այլն) փոխ անի, որ յիշեց մեր թագաւորին 10 մանէթ, չէն կենայ, չէն կենայ։*

*—Չէն կենայ, չէն կենայ. պատասխանում են մակարները։*

*Այսպէս էլ շարունակւում է իւրաքանչիւր նուիրողի համար։ Ապա վերջում յայտնում է ընդհանուր գումարը, որից և ստանում է իւր վարձը ներկայ քահանայի ձեռքից, իսկ գումարը յանձնւում է թագաւորահօրը։*

*Ղազախի Ուզունթալա գիւղում նոյնպէս լինում է վերջին գիշերը նուիրաբերութիւն, որ այն տեղ կոչւում է յիշելիք։*

Մի ճարպիկ և լիզուանի մարդ, գլխաւորապէս դաւուլչին (Թմբկահար), կանգնում է տան մէջ տեղ, հանդիսականների առաջ և զանազան աւելցուկներով գովում գովաբանում է նուիրողներին՝ ձեռքում խաղացնելով նուէրը։ Շատ տասնեակ տարիներ առաջ, շատերը գիւղացիներից այդ յիշելիքի երեկոյին փողի փոխարէն յիշեցնում էին կով, խոզ, ձի, փեթակ մեղու և այլն։

Սովորաբար ճարպիկ յիշողը դիմում է Թագաւորի մակարներին։

—Այ Թագաւորի մակարնի. կանչում է նա։

—Համմէ համմէ. պատասխանում են նոքա։

—Աստուած ձեզ պարի ամէն, շէն կենայ Ղուգեասանց Քէքէն (Գրիգորը). Աստուած նրան հաստատ պահի, մեր գիւղից, մեր իշխաններից անպակաս անի, նրա մինը հարիր տեառնայ՝ հարիրը՝ հզար. Աստուած նրա սուփրան քցած պահի, Թիւնդիրն դրած, էս ուրախութիւնը մի օր էլ Աստուած նրան արժանացնի, ըսօրէց էլ նրա որթու կարմիրը կապենք, որ յիշըցրել ա մեր Թագաւորին մի լաւ կով՝ ֆորթը տակին, շէն կենայ, շէն կենայ։

—Շէն կենայ, շէն կենայ. կրկնում են մակարները։

Գիւղի չարաճճի պատանիները, որ իբրև հանդիսատես ներկայ են լինում, սկսում են կովի նման բառաչել, ձիու նըման խրխնջալ, խոզի նման կղկղալ, մեղուի նման բզզալ, նայած՝ թէ ինչ է յիշեցուած։ Սակայն այժմ յիշեցնում են միայն դրամ և դորանով փակուել է տղայոց չարութեան ասպարէզը.

Դարալագեազի գաղթական հայերի մէջ, կանչի գիշերը, երբ հրաւիրուած ժողովո րդը անձնատուր է լինում պարի և ուրախութեան կամ մասամբ արդէն ցրուած են լինում, Թագաւորը, ազափները և այլ մերձաւոր ընկերները հաւաքւում են առանձին սենեակ կամ տուն և ուտում են հարսի հօրանց տնից ուղարկած ուտելիքները։ Այս ընթրիքըասւում է „ակռաժաժայ։“

Դաւալու գիւղում Թագաւորի „որսից“ յետոյ է լինում «ակռաժաժայ»։ Այդ տեղ զոքանչը փեսայի համար ուղարկում

է մի քանի գաթայ, եփած հաւ, մի աման հալուա, մէջ տեղը դրած արծաթ մանէթ, աւելի կամ պակաս, ըստ կարողութեան, իբրև նուէր փեսային։ Զուռնան ուղեկցում է այդ ուտելիքը մինչև փեսայի տունը։

Բասենում և Շիրակում ասւում է «առկաժաժուն» և լինում է այն երեկոյին, երբ «որսից» կամ նորանց բարբառով «հաւթռունքից» մնացած հաւերը ուտում են ազափները և այլ մօտիկ բարեկամները։ Այս ընթրիքի ժամանակ թագաւորը չէ կամենում ուտել, չէ կամենում ատամները շարժել, մինչև որ հարսնեղբայրը փող է նուիրում նորան։

Ագուլիս „առկաժաժի“ փոխարէն, երկուշաբթի օրը լինում է *խնամականչ*։ Ազափբաշին զուռնայի հետ գնում է հարսնահօր մօտ և հրաւիրում է հարսի ծնողաց և բարեկամներին փեսայի մօտ։ Փեսայի տանը սորանց ընդունելու ժամանակ փոխադարձ տալիս են միմեանց կարմիր ձու։

Հին Ջուղայում կանչի ընթրիքի հետևեալ առաւօտ, երկուշաբթի օրը, թագաւորի տան բակում, գորգի վերայ քաւորը դնում է խաչաձև թուրը և պատեանը։ Մօտն էլ մի բաժակ գինի։ Թագաւորը երեք անգամ ծունր է իջեցնում թրի վերայ և բաժակ գինին խմում։ Ապա երկու ազափ բռնում են թրի երկու ծայրը՝ սուր բերանը դէպի վեր։ Ազափբաշին տալիս է թագաւորին մի կենդանի հաւ, որ բերել էր նա հարսի հօրանց տնից։ Թագաւորը հաւի ոտերը բռնած; նորա վիզը այնպէս է զարկում թրի բերանին, որ հաւի գլուխն իսկոյն և եթ թռչում է։ Ազափներն էլ նոյն ձևով մորթում են իւրեանց տնից բերած հաւերը և այս ասւում է «որս տալ»։

Որսի հաւերը եփում են և այգիներում վայելում են այն ուտելեաց հետ միասին, որ ազափբաշին բերել էր հարսի հօրանցից։ Այդ երեկոյին նորահարսը պարում է։

Այս տեղ, ժողովրդի սովորութեամբ ազափբաշին, բացի վերոյիշեալ պարտաւորութիւնները, որ մենք արդէն տեսանք, ունի և հետևեալ պարտականութիւնները. ապահով պահել թագաւորի գլխարկն ու կօշիկները, որ հարսնատան չար տղայք

աշխատում են գողանալ և փրկանքով դարձնել. բ. Հարսնատնում Թագաւորի համար բերած „խոնչաները“ պահել, որպէսզի տղայքը չգողանան ուտեն։ գ. Ջարսնահօր տնից որսի համար հաւ բռնել և դ. Թագաւորի շորերը հագցնել։

Այս պարտականութիւնները Վաղարշապատի գիւղերում դրուած են խաչեղբօր վրայ։

Գաւալու գիւղում ազափները բերում են մի մի հաւ և առաջինը Թագաւորն է զարկում Թրով հաւի վզին և գլուխը Թռցնում, ապա ազափները։ Սա ասւում է «որս»։ Մորթած հաւերը կանխապէս Թագաւորի տան երդիկից ցած են ձգում և ապա պատրաստում են ու ուտում։

Դարալագեազի գաղթականների մէջ կանչի հետևեալ առաւօտ, երկուշաբթի, Թագաւորը, քաւորը և ազափները սազանդարներով կամ զուռնայով պտտւում են բարեկամների տները և հաւեր ժողովում, որ ասւում է „ղուշ“ և ծառերի հետ միասին կազմում են Թագաւորի խազնան։

Հրաւիրուածները, իբրև վերջին ճաշ, վայելում են խաշ, այսինքն ոտ ու գլուխ։

Սալմաստի գաղթականները հարսանիքի վերջը երբեմն պարում են և երգում հետևեալը.

Լուսնակը կըշտանց կէԹայ,
Խարսները խերանց կէԹայ,
Էշ կնիկը, գէշ կնիկը,
Մածուն կուզեմ Թան կբերի,
Ալրմաղով ցան (սԹարի փշրանք) կբերի։

Դարալագեազի Ազատակ գիւղում, հարսանիքի վերջը, երբեմն երգում են ստորև դրած երգը և հետը պարում են «Ծունկ լոտրուկ» պարի եղանակով։

Խատի կէս կորեկ ունեմ ցանելու խամայ.
Տունը մէ ոսկի (վեցկի) տուէք վարելու խամայ.
Տունը մէ մանգեռ տուէք ցանելու խամայ.
Տունը մէ մայզէօն (մանգաղ) տուէք քաղելու խամայ.
Տունը մէ ջառջառ տուէք ծեծելու խամայ.
Տունը մէ քեառէշք (որսելի) տուէք էրնելու (քամել) խամայ.
Տունը մէ սարաԹ տուէք մաղելու խամայ.

Տունը մէ թիւրա ($^{1}/_{2}$ փթանոց չափ) տուէ.ք չափելու խամաց.
Տունը մէ ճաղաչ տուէ.ք աղալու խամաց.
Տունը մէ թոնդիր տուէ.ք թխելու խամաց.
Տունը մէ կնիկ տուէ.ք լանելու խամաց.
Տունը մէ մարդ ժողուէ.ք ուտելու խամաց։

Փողովուրդը ցրուելուց յետոյ՝ թագաւորը, ազափները և մօտ բարեկամները բանում են թագաւորի *խազնան*, վայելում վերջացնում են, ապա ազափները դատաստան են բանում լաւ և համր թագաւորի անունից։ Ներկայ եղողներից ով քիչ փող է նուիրում ազափներին, վերջիններս իսկոյն ենթարկում են նորան զանազան պատժի, կոլանաւորում են, կապում են այր և կնոջ միասին և այլն։

Շիրակի, Կարսայ և Բասենի գիւղերում առաջինը թագաւորն է զարկում հաւի գլուխը և այդ հաւը պէտք է ուտեն պսակուած մարդիկ, իսկ միւս հաւերից մինը քահանայինն է, մինը քէհինը, մինը զուռնաչուն և մինը հարսին ու փեսային, մնացածն՝ ազափներին, որ յետոյ ուտում են։ Հաւերը ժողովում են ազափները և դրանց մորթելը կոչւում է «հաւթունք»։ Սորանով էլ վերջանում է հարսանիքը։

Դարալագեազի գաղթականների մէջ թագաւորի խազնան կողոպտելուց յետոյ՝ հարսի մօտ ժողովում են կանայք, բերելով իւրեանց հետ զանազան կերակուրներ, որ նորանցում անուանւում է *քեասայ*։ Ապա զուռնայով գնում բերում են հարսի ջհէզը, որ մի ազափի գլխի վերայ դրած պարելով բերում են։ Գալիս է թագաւորի հայրը, որի բացակայութեամբ չէ կարող բացուել ջհէզը և տալիս է մի ռուբլի և աւելի *ըողըսումը* (նուէր) ջհէզ պահող հարսնամօրը կամ հարսի քրոջը։

Կանայք մի առ մի զննում են ջհէզը և յետոյ յանձնում փեսայի մօրը, որը իւր կողմից նուիրում է այս կամ այն բարեկամին ջհէզից մի զոյգ գուլպայ, ձիու նոխտա, ջրի բաժակ և այլն։

Հարսնեղբայրը (խարսնաղբեր) որ մինչև այդ րոպէն լինում է նորահարսի, իւր քրոջ մօտ, ստանում է փեսայի հօրից իբրև նուէր մի կապա, կամ գլխարկ կամ այլ հագուստ։

Խաչն ուտելուց յետոյ երեցփոխը կտրում է ուրցը և իւր զարդերով մի մի ճիւղ բաժանում է պատուաւոր մարդկանց, իսկ մէջ տեղի գլխաւոր ճիւղը նուիրում է քաւորին և նորանից եկեղեցու օգտին ստանում է նուէր։ Քահանան բանում է նարօտը և խարջըկոթը (ուսկապները)։

Ագուլիսում թագաւորին արգելում է շփմում բարեկամներից մի երեխայ և առանց նուէրի չէ թողնում որ մտնի հարսի սենեակը նարօտը վերցնելու քահանայի ձեռքով։ Քաւորը թուրը հանած կանգնում է՝ քանի որ քահանան կատարում է կարգը, և ապա թրով կտրում է նարօտը և տալիս է թագաւորին բարձի տակ պահելու համար։

Դարալագեազի Կօրադիզ, Սէս և այլ գիւղերում, նարօտը անմիջապէս վերցնելուց յետոյ, ազափները բանում են փեսայի հագուստի բոլոր կապերն ու կոճակները, նոյնպէս և արխնոտ դանակը, որ նոցանց բարբառով ասւում է *խանգեօրծ*, այն է հանգոյց։ Նոյնը անում են և հարսին նորա *հարսնքիրները*։

Հարսանիքը սորանով վերջանում է, բայց փեսան եօթ օր պաս է պահում, որ եօթն արու զաւակ ունենայ։

Պսակուելուց յետոյս երբ նորահարսը առաջին անգամ գընում է եկեղեցի, նորա դէմի պատկերի շուրջը վառում են շատ մոմեր։ Մեծ պասի միջնեքին հարսի հայրը իւր աղջկայ համար բերում է *թաբաղ*, այսինքն զանազան մրգեղէն և ուտելիք։ Ծաղկազարդին իւր աղջկան հրաւիրում է իւր տուն և այդ կոչւում է դարձ, և պահում են նորան մինչև համբարձում։

## ՆԱՆԻԿՆԵՐ

### ԵՐԵԽԱՅՆ ՔՆԵՑՆԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿ

(*Օրօրոցի երգեր*)

### Ա.

Դարալագեազի Կնիշիկ գիւղում։

Նանիկ ասեմ՝ քնես դու,
Ծանկեմ՝ քրտնես դու,

Ծանկածն եդ գցեմ,
Վարդի նման փռուես դու։
Սիրտս խոցով եարայ ա,
Թաքուն չի, աշկարայ ա,
Դեղ կանեմ, դարման կանեմ՝
Դեառ էն եարէն եարայ ա։
Աստըծունէ նման ա,
Թոռ (անձրև) կայ, տափը նամանայ,
Նանին բերի քիանայ (քեզանից)
Բաջու սիրտը թռուանայ։
Ես նան ունեմ մոլորած,
Գիշերը քունը կորած.
Նանն ու բաջին ինչ անի.
Պուճուր տղայ մլորած։
Զարդախո ցան եմ անել,
Բոյիդ նման եմ ածել,
Ես էլ քեզ ջան եմ ասել,
Մեծացրած ման եմ ածել։
Նանիկ արա, մեր պզտիկ,
Զամիչ բերեմ՝ կեր պզտիկ,
Ծառի տակին ձնէ բուկ,
Քաղեմ եփեմ, կեր պզտիկ։

Բ.

Դարալագեազի Խաչիկ գիւղում պապը իր թոռին խաղացնելու ժամանակ.

Ձիւնն եկաւ քուլայ քուլայ,
Պապն ասեց դանեն ուր ա,
Գէլն ասաց, հրէս տարայ,
Շունն ասեց, հրէս բերի,
Պոչիկ թիւլայ,
Մեղրը կերար, պուլիկս ուր ա։

Գ.

Նոյն գիւղում, լուսաբացին, երեխային խաղացնելու ժամանակ մայրը երգում է։

Լուսը լիսացաւ.
Հարսը վերկացաւ.
Հացը գողացաւ.
Կերաւ կշտացաւ.

Սկեսուրն իմացաւ.
Պատրոնը կռուացաւ.
Գնաց Թուրքացաւ.
Տէր ողորմեա, Տէր ողորմեա։

Դ

Ղազախի Ուզունթալա գիւղում տատն իւր թոռին խաղացնելու ժամանակ։

Պապար կանի կըտէտը.
Հարսն ու աղջիկ խտէտը (գիրկը.)
Խնձորը կծի, ծուլ անի,
Ջիգի հարսին կուլ անի։
Տանի ծէրի չարթն (կաչաղակ) եմ,
Աղջկերանց մարդն եմ,
Տանի ծէրի հոպոպն եմ,
Աղջկերանց փոփոքն եմ.
Տանի ծէրի ճիւղէն եմ,
Աղջկերանց գիւղէն եմ։

Ե.

Հին Նախիջևանում։

Լալա ասեմ քունդ տանի,
Զար կամարիկ ջուրը տանի,
Ով որ քեզ չի սիրում,
Թող նրան ջուրը տանի։
Էս օր մեր տուն խան ա գալու,
Բաղ ու բաղչէն ման ա գալու.
Հարս ու աղջիկ էյվանումը,
Թոփ ծաղիկը մէյդանումը,
Ոսկին ծոցին ճնկճնկաց.
Ալ ձին տակին խրխնջաց։

Զ.

Երևանում և Ղազախի Ուզունթալա գիւղում, ձեռքերի վերայ թռցնելով երեխային։

Էդ ով էր էդ կտերը,
Թռցրէք էդ ծտերը,
Ազափ տղի տեղն ինչ ա.
Կոկոմ կոկոմ ծծերը։
Թռի, թռի, թռցնեմ,
Սև հաւի մ; ս կերցնեմ,
Ազափ բաշուն հասցնեմ։

Է.

Հին Նախիջևանում աղջիկ մանկան համար։

Դանդանի դանդան պ՚տի,
Մի լաւ տղայ բանդ պիտի,
Ջիբը քար ու քանդ պիտի,
Դան դանի դան դանեցի,
Բերանը եկեղեցի,
Տուն եկաւ համբուրեցի,
Դուրս եկաւ բարևեցի։
Աղջիկ ունիմ նմանի,
Ձենք տալ հազար թումանի,
Բուրդ բերէք բաժինք անի,
Ուղտ բերէք բարձի տանի.
Կտանք մի բազ՚րգեանի
Զորլին գայ ճենճէզը տանի։

Ը.

Ալէքսանդրապոլում։

Ծափին ծափին կուլկուլայ,
Հալուայ շաքեար կուլ կուտայ,
Ելէք, աշեցէք վև գուքայ,
(Տուբիթ) խանումը տուն գուքայ,
(Գաբրիէլ) աղան տուն գուքայ,
Զլի խորոզը (աքաղաղ) մորթեցէք,
Թղթով թնդիր վառեցէք,
Տուբիթ խանումիս փայը պահեցէք։

Թ.

Դարալագեազի Էրդափին գիւղում, երեխային լողացնելիս և քուն դնելիս։

Էրկնը վզիկ,
Թափտէք ճթէկ.
Ըունէր քնիկ,
Ջաղամաթի քունը քեզիկ։

## ԵՐԵԽԱՅՈՑ ԱՍԵԼԻՔՆԵՐ

1.

Աղէքսանդրապօլում ամպը որոտալու ժամանակ երեխայքը, մէջքը պատին քսելով, արտասանում են.

Ամպը գոռաց
Մուկը ճռռաց,
Մայրամ խաթուն
Թախտը նստաւ։

2.

Ղազախի Ուզունթալա գիւղում։

Ա՛ կնանիք,
Եկէք, գնանք Չըրթմակը,
Չըրթմակայ ճամփէն դեօրն ա.
Ալա քօլի խնձեօրն ա,
Խնձեօրը կծեմ ծուլ անեմ,
Ջիզի հարսին կուլ անեմ,
Պատրիք անեմ պատ քցեմ,
Սաղրուն (ձիու գաւակը) նի ըլեմ (հեծնեմ) չափ քցեմ։

3.

Դարալագեազի Խաչիկ գիւղում, ցուրտ եղանակին, երբ արևը թագնուած է ամպերի յետև, երեխայքը կամենալով տաքանալ, աշխատում են դուրս կանչել արեգակին։

Արև, արև, եկ, եկ,
Ջիզի քարին վեր եկ,
Ջորն ընկնեմ, ձորն ընկնեմ,
Կարմրազիզիկ դուրս ընկնեմ,
Քու հէր, քու մէր եկել ա,
Թուր ու թուանք բերել ա,
Գոմշու ոտին տուել ա,
Դռան տակին հորել ա,
Մուկն եկել ա, հանել ա,
Կատուն եռնէն վազել ա։

4.

Նոյնը Ջարուրի Խանլըխլար գիւղում։

Արև, արև, եարի,
Դայա բաբադ էկիրի,
Ոսկի թանան պիրիրի,
Ծառը տակը դրիրի,
Աքլեօրն էկէ՝ կճըճէ,
Կոր քեալն էկէ կոխրճէ,
Տէրտէրն էկի օխնիրի,
Տիրօխնին էկէ՝ լացիրի
Կնեաց խօրնը մօրը ճիւր տայ իկեայ,
Սողսողիկ, դողդողիկ,
Մ'է տաք արև տու տաքնամ։

5.

Նոյն Խանլըխլար գիւղում և Հին-Նախիջևանում աղքատ գերդաստանի մասին ասում են։

Կար մէ իրիկ,
Կար մէ կնիկ,
Ձինեցին թաղկէ տնիկ,
Ալին գիդան մէ կոր պլիկ,
Էն էլ տուին Ծամունի,
Ծամունն եկաւ մուկը տարաւ,
Ճքեաթ, շքեաթ, մուկն ի շքեաթ
Ջարկին մկան պոչը կրրին։

6.

Դարալագեազի ընիկ հայերի մէջ ցուրտ եղանակին։

Ցուրտ ա, ցուրտ ա,
Մօլլէն քիւրդ ա,
Տէր տէրը հայ ա,
Ջուալի թայ ա։

7.

Նոյն տեղում զկրտոցը կտրելու համար։

Քեռին եկաւ պակը,
Եւ պտուկը շալակը.
Պտուկն ընկաւ, կոտրվաւ,
Ջկրտիկը կտրվաւ։

8.

Երևանում եթէ երկուսը իրար կենաց խմելով, ուշադրութեան չեն առնում ուրիշներին, այդպիսիների մասին ասում են։

Սադաթը խմեց Մադաթին,
Մադաթը խմեց Սադաթին,
Մեռնեմ ձեր անկարգ ադաթին։

9.

Երևանի շրջակայ գիւղերում աղջկունք ասում են։

Հայ, հարայ անգս } Ներքին Ծեօտ.
Կոտրուեց տանգս
Մէկ պառաւ աղջիկ
Ընգել ա ճանկս.
Ծեծում եմ, լալիս ա,
Կանչում եմ գալիս ա,
Սիրում եմ խօսում չի։

10.

Հին Նախիջևանում նոր նշանուած երիտասարդի համար ասում են։

Փեսայ, փեսայ, փստացնեմ,
Դռան տակը նստացնեմ,
Մի ճոթ հացով կշտացնեմ,
Մի թաս գինով գժուացնեմ,
Երկու բարձով քնացնեմ։

11.

Դարալագեազի հին և նոր հայերի մէջ պտտւում է մի անէկդոտ մի քահանայի ու նորա տիրացուի մասին, որ հրաւիրուած են եղել մի աղքատ հիւանդ կնոջ ճաշակելու և քահանան շարականի երգեցողութեամբ հասկացրել է տիրացուին, որ պառաւ հիւանդի կացինը գողանայ։

ՔԱՀԱՆԱՆ

Մոնթիկ, մոնթիկ.
Առջի քոնթիկ,
Նայիր պառւի գլխատակին,
Կացինն առ դիր կռնատակիդ.
Ողորմեա քո ստեղծուածոց
Յուսով ի քեզ ննջեցելոց։

ՊԱՌԱՒ

Տէր տէր, տէր քահանայ
Փորդ մտնի սև սատանայ
Առ քո օրհնանքն ու յետ գնա,
Թող մեր կացինը մեզ մնայ.
Ողորմեա քո ստեղծուածոց,
Յուսով ի քեզ ննջեցելոց։

12.

Նոյնը Դարալագեազի նոր հայերի բարբառով։

ՔԱՀԱՆԱՅ

Ինդա կացին,
Դռան տակին,
Վերու, կոխա
Մէջ տոպրակին։

ՏԻՐԱՑՈՒ

Պոճն երկան է անիրաւի,
Չի պարտկուիր
Մ'էջ տոպրակին։

ՔԱՉԱՆԱՑ

Վէրու, տար,
Զարկ ընդա քարին,
Պոճը կոտրա
Մէջ տոպրակին։

13.

Նոյն հ․այերի մէջ հարսն սկեսուրի հետ կռուելուց յետոյ։

Կեսուր ինձի զրկիրի,
Անթրոցով մրկիրի,
Կեթամ՝ խանին դատ կանեմ,
Ծօշ տունը վերան կանեմ,
Փստիկ տունը շէն կանեմ։

14.

Դարալագեազի Երդափին գիւղում, երեխայոց խմբից ճանապարհ գնալու առաջ ընկնողների համար ասում են։

Առջին, առջին
Գէօյարչին (աղաւնի)
Դայադ (մօրդ) բռնի
Կոր չարչին։

Իսկ յետ մնացողների համար ասում են։

Իտին, իտին,
Իտմը կծի,
Խարիր մանգաղ
Դայուդ կցին․

15.

Դարալագեազի Քարագլուխ գիւղում աղջկունք վերվեր թռչկոտելով երգում են։

Խըշ, խըշ, իգդա (փշատ) խըշ,
Իգդա բըզըմ բաղդա խըշ,
Ես խսանի (հիւսնի) թոռն եմ,
Կիր Մարանի խարսն եմ,
Կինդս ընկաւ բըլըխտօր, (անյայտ բառ)
Պտիսի, հայ պտիսի.

Ալ արբշում կծխսի,
Գեղի ըռէս խէրիկս ի,
Տայք տանտիկին մէրիկս ի,
Քեարվան ղռան քեռխս ի։

16.

*Նոյն տեղը երեխայք միմեանց խարդախութիւնը տեսնելով ։*

Սատանայ, հայ սատանայ
Պոչիդ, տակը տխտանայ
Քանի զարկեմ խաստանայ,
Աղջիկներուն մօտանայ,
Պառաւներին զատանայ։

17.

*Ճարուրի Ուլխանորաշէն գիւղում խաղին չմասնակցող Սրև խային բարկացնելու համար ընկերները ասում են։*

Զըռպօ, զըռպօ, զըռպ անեմ,
Ճախայկ թալեմ՝ խըրկ անեմ։

*Իսկ չմասնակցող երեխան պատասխանում է.*

Ընկերս պէ,
Կորկոտս կէ։

18.

*Դարալագեազի Ազատակ և միւս գիւղերում։*

Ա.

Էս քշեր մէ երազ եմ տըսէ,
Ղամբար գեօլերն եմ լօզցէ,
Մէ կուց աւազ եմ կողցէ,
Տէր տէր, մեղայ Աստըծու։

Բ.

Խաւէրը մտան կեօրծի խօրը,
Աղուէսն է կերաւ խարսի փորը։

Գ.

Եարէք էթանք ինձի,
Մէ փարա տանք բրնձի,
Ես քէ թալեմ, դու ինձի։

Դ.

Հալայ, հալայ, բայլարի,
Ալդըմ սալամ բայլարի.
Ես լուսնակ, դու արև։

Ե.

Չաղանայ չաղչաղանայ,
Մալէ, մալէ, դարկէ դարկէ,
Սև սամաթեռ օղն ու կօճակ,
Մէ բողոճակ թելս վեր դուռը։

19.

Նոյն գիւղերում կորուստ որոնող երեխայքն ասում են։

Սատանայ, սատանայ,
Ինչ կիտեր ես՝ եարի կիսենք,
Շատը քեզի, քիչն ուր է.
Սատանայ, սատանայ,
Ջարկեմ, պոչիդ տակը փետանայ։

20.

Նոյնը Ալէքսանդրապօլում։

Սատանայ,
Պօչիդ տակը բանըմ կայ,
Կէսն ընձի, կէսը քեզի։

Նոյնը Շամախի։

Սըտանայ, մտմտանայ,
Մին զադիկ ամ կորցրալ,
Նալիգը քիթի, ինձի տուր։

21.

Երևանի կողմերում երգում են.

Հէքեաթ, հէքեաթ, պապս ա,
Ղաշղա քուռակ տակս ա,
Հեծնեմ, էթամ Էրևան,
Էրևանայ կուտ բերեմ.
Կուտը տամ հաւերին,
Հաւերն ինձի ձուձու տայ,

Ձուձուն տանեմ դարփնին,
Դարփինն ինձի շղփինկ տայ, (անկոթ դանակ)
Շղփինկ տանեմ, հարսներին,
Հարսներն ինձի գաթայ տան,
Գաթէն տանեմ չոբանին,
Չոբանն ինձի գառը տայ,
Գառը տանեմ Աստըծուն,
Աստուած ինձ մի աղբէր տայ,
Աղբէր, աղբէր, ջան աղբէր,
Դու բերդի գլխին՝ աղբէր,
Ես բերդի տակին՝ աղբէր,
Չալ չալ կովերն ինչ էլան,
Նախրատափին գիւմ էլան,
Մերայ, մերայ, գիշերն արի կաթ կթի,
Կաթը դրի կրակին,
Ման եկայ չալ տօրակին,
Այ գալըմ աղբէրակին,
Դու իմ աղբօրն ի՞նչ արիր,
Քէ դնեմ իշի քուռակին.

22.

Դաւալու գիւղում, գարնանը, երեխայքը խմբովին դաշտ զբօսանքի գնալու ժամանակ ասում են.

Չա, չա, չալթուկ չա,
Չալթուկ փռեմ չորանայ,
Տամ հաւերին կուրանայ,
Հաւերն ինձի ձուձու տան,
Ձուձուն տանեմ դարբնին,
Դարբինն ինձի շղփինկ տայ,
Շղփինկ տանեմ հարսին,
Հարսն ինձի գաթայ տայ,
Գաթէն տանեմ չոբանին.
Չոբանն ինձի գառը տայ,
Գառը տանեմ Աստծուն,
Աստուած ինձի աղբէր տայ,
Աղբէր, աղբէր, ջան աղբէր,

Ջանս քէ ղուրբան աղբէր,
Դու բերդի գլխին աղբէր,
Ես բերդի տակին աղբէր,
Բերդը պլուցին, աղբէր,
Գինին թափեցին, աղբէր։

23.

Ղազախի Ուզունթալա գիւղում։

Հէքիաթ, հէքիաթ էս պապս,
Ղաշղա քուռակ էս տակս,
Գնացի Չոլաւէր,
Տեսայ մի հլիվեր (ալևոր)
Մտայ մի ճաղաց,
Միջին մի կտաղած,
Մի հաց ունէր մկան կերած,
Մի հարսն ունէր թոնրի էրած.
Լինգը քաշեց կոճերն աղաց։

24.

Ալէքսանդրապօլում.

Հէքիաթ, հէքիաթ պապս,
Ղաշղա քուռակ տակս,
Հեծնեմ, էրթամ Երևան,
Գինի խմեմ, գիրանամ.
Հաւերիս կուտ ու ջուր տամ,
Հաւերս ինձի հաւկիթ տան,
Հաւկիթը տանեմ խառատին տամ,
Խառատն ինձի շուի տայ,
Շուին տանեմ չոբնին տամ,
Չոբանն ինձի գառ տայ,
Գառը տանեմ Աստուն տամ,
Աստուած ինձի աղբէր տայ,
Աղբէր, աղբէր, ջան աղբէր,
Դու բերդի պատին աղբէր,
Ես բերդի տակին աղբէր,
Ձաքար մաղեմ, կեր աղբէր։

25.

Շարուրի Ուլիա Նորաշէն գիւղում խմբուած երեխայքը հանելուկները ասած վերջացրած, այլեւս չեն գտնում, ասում են.

Խանելիւք, խանմանելիւք,
Քեզի խանեմ մէ բալաք ձմերուկ։ (գոյնզգոյն)։

26.

Նոյն գիւղում, գարնանը, առաջին անգամ ամպը որոտալիս, երեխայքն աչքերը դէպի երկինք, ձեռքերը լայն բանում են և ասում երեք անգամ։

«Մեր ծծումի (խնոցի) կարագը էդ ղըդայ ըլնի»։

Կամ պատի քարը կրծելով՝ ասում են երեք անգամ։

«Իմ ատամները քեզ պէս պինդ ըլի, քար»։

Կամ մէջքը պատին երեք անգամ դիպցնելով ասում են։

«Պատ, իմ մէջքի թուլութինը տամ քեզի,
Քու մէջքի պնդութինը տու ընձի»։

27.

Նոյն տեղում կարճահասակ՝ մարդուն երեխայք ծաղրում են.

«Ակլի (Յակոբ) կաքաւ,
Վեարդի՞ տափար, (թագնուար)
Փետով զարկեմ,
Փիտուր թափար։

28.

Նոյն տեղում ընդունելով, որ կաչաղակի (ղաջըլայ) կարկաչելը նշան է հիւր գալուն, երեխայքն ասում են։

Ղաջըլայ, բարով էկար, խազար բարէ
Թէ խէր ես, քելի, մէյն էլ եարի,
Թէ շառ ես, ոտդ կոտրուի, էլ մի եարի։

29.

Նոյն տեղում աղջկունք, մի ոտի վերայ պտտուելով ու փէշերը քամուն տալով, յանկարծ նստում են գետնին և ասում։

Անթրան (անուն).
Պատէն թռամ,
Ինգեամ, մեռամ։

30.

*Նոյն տեղում։*

Աւաշան (անուն).
Թումաշան. (անուն)
Գնացին, պոլորին բերին քեանս մէ շան
Վեճու էր տըսէ էգ Թամաշան։

31.

*Ալէքսանդրապօլում աղջկունք վեր վեր Թռչկոտալով։*

Ելայ էրդիկ, վեր վեր ընկայ,
Խաչքը կոտրաւ, ես նես ընկայ,
Գլօրեցայ, Թնդիր ընկայ,
Օխտը պուտուկ տօլմա կերայ,
Էլի ըսի՝ չկշտացայ.

32.

*Նոյն քաղաքում Կարապետ անունով մարդուն ծաղրելու։*

Կարապետ,
Կարմիր վարպետ,
Ձան վարդապետ,
Իշու կարպետ։

33.

*Նոյն տեղում աղջիկները Թռչկոտալով երգում են միասին։*

Ջփիկ, գփիկ զարն է,
Ալուաս ծաղիկն առնէ,
Իմ տալը տախտակումն է,
Կանանչ կապան գլխուն է,
Բերանն առած լեղի է,
Բերնես Թափածն գինի է,
Գինի, գինի լաջերուն,
Վարդ մանուշակ հարսներուն.
Տանձ ու խնձոր աղջըկներուն,
Քթոցմ աղբ մանչերուն։

34.

*Նոյն տեղը խաղացող խումբը ցրուելու ժամանակ։*

Ծտի բուն, Ծտի բուն,
Երբ պտի մթնի գնանք տուն,
Գնանք տեսնանք հարսը քուն,
Կեսուրը կշտին, քոփակ շուն։

35.

Նոյն քաղաքում աղջկունք գնդակ խաղալու ժամանակ։

Մէկ, երկուս, տասնըվեց,
Ես էլ ըսի տասնըվեց,
Դուն էլ ըսիր տասնըվեց,
Ձես հաւատայ, համբրէ տես։

36.

Նոյն տեղում երեխայքը թուչկոտալով։

Մէկ, էրկուս, յերկըննաս,
Ցերեկ, չորս, չորնաս,
Հինգ, վեց, վերնաս,
Օխտը, ութը ուր կերթաս,
Իննը, տասը տուն կերթամ։

37.

Ղազախի Ուզունթալա գիւղում «չիլգի» կոչուած խաղի ժամանակ։

Սըրմի (կապոյտ) վիլա, (օղականման փաթթած թել)
Կուդ թիլ ա,
Ընկերը հետուկ, (ընկերիդ նման)
Աչքիդ ծետուկ.
Ընկերիդ ճաթէն կտրես,
Բաբինանց Զատինի կօլօլ աչքն ուտես։

38.

Նոյն գիւղում։

Ա.

Օյբ, բէն,
Տաշտին դմփեմ,
Օխտը պաղարճ խըտըտեմ,
Գնամ գեղը պտտեմ,
Գամ կլեօխդ դմփեմ։

Բ.

Հրէս կկեայ փլաւը,
Թակուրճակիս ղլաւը։

39.

Նոյն գիւղում, երբ երեկոյեան դէմ, եկեղեցու զանգերը զարկում են, որպէս զի իմացնեն ժողովրդին վաղուայ տօնը, երեխայքը ուրախութեամբ թռչկոտում են և ասում։

Էգուց կիրակի,
Էրմանի բեագի,
Չալ հաւը ծրտեց,
Ձուն քամակից շպրտեց։

40.

Ղամախու գիւղերում երկ երկու կամ խմբովին ձայնով երգում են ու ծափ տալի.

—Արա հօ, քո մար հօր ա,
«Արա հօ, քեացալ ա Ղաքի.
—Արա հօ, հինչ կըպիրի,
«Արա հօ, զար ու զարբար,
—Արա հօ, ինձ էլ կտա՞ս.
«Արա հօ, պա խէ՞ չըմ տալ։

41.

Նոյն տեղում թևի շարժումը նմանեցնելով ճախարակին ասում են.

Ֆըզ, վըզ չխարակ,
Ես հաստ մանեմ
Դու պերակ։

ԳՈՒԹԱՆԻ ԵՐԳԵՐ

Ա.

Բասենի գիւղերում գութան վարելիս հօտաղները երգում են։

Խըլըսուն (առաւօտ) թթու թան,
Կէս օրին ոսպէ փռիկ (ապուր)
Իրիգուան աւելուկի աղցան,
Դէհ, հոռովել արա,
Մուխսի (մահտեսի) գութան։

Բ.

Նոյնը Ղազախի գիւղերում։

«Մաճկալը մաճին,
Դիւոն ընկաճին,
Ճիտ անեմ (գրկեմ) մաճկալի բաջին,
Չորիքը պտտեմ
Մաճկալի բաջին խտըտեմ։

ԱՊԱՔՈՎՈՒԹԻՒՆ «ԽԱՐԲՈՒԽ» ՑԱՒՑ

Ձարուրի Ուլխանորաշէն գիւղում ով կամենում է խար-բուխով չվարակուել, ասում է խարբուխով հիւանդին.

Ճաղցէն եմ իկեալի,
Կլոխս ալրոտ է։

Հիւանդը հարցնում է.

—Դաւան (ուղտը) քանի՞ ոտէն կլլի.
—Չորս, պատասխանում է առողջը.
—Խազ ու խարբուղս քեզ խէտ փոխս

շարունակում է հիւանդը։

## ԵՐԵԽԱՆՑ ԽԱՂԵՐ

### 1. ՄԱՏԽՓՈՒԿ

Ա.

Դարալագեազի նոր հայերի մէջ աղջկունք ժողովում են և իւրեանց միջից ջոկում են մի պլուխ, որ կոչւում է պապ։ Ապա բոլորն էլ իւրեանց ձեռի ցուցամատը դնում են մի տեղ և պապն իւր աջ ձեռքի ցուցամատը կարգով դիպցնում է նո-րանց մատերին և արտասանում է այս խօսքերը։

Ուկուլ, դուկուլ, դինազէ
Ձամիլ, մամէլ պիպազէ,
. . . . . . .
. . . . . . .
Դանակ սրեմ,
Սև խաւու վիզը կտրեմ։

Վերջին խօսքը որի մատին ընկաւ, մատը բռնում են և աղջկան ծեծում են, մինչև խոստովանի թէ որ տղային պէտք է ուզէ։

Ք.

Մատխփուկ Հին Նախիջևանում։

Ովլի, փանի, կապիտան,
Ձեմի, կոմի, գապիտան,
Լատտան, բիտտան,
Ռոզ, բռոզ,
Քէրվա, իզդա,
Կոկին կնեազ։

Գ.

Նոյն խաղը Երևանում և Դաւալու գիւղում։

Աքլոր դիքլոր,
Ձարուղ, չամբար,
Ոսկէ ղամբար,
Հայի հուզի,
Թուրքի Թազի,
Պոմբլա պզի,
Եալալի,
Ղըլըջ, մըլըջ,
Դօլդուր բիստի,
Աբասի։

Դ.

Նոյն խաղը Դարալագեազի Ազատակ գիւղում։

Ուկուլ, տուկուլ,
Ձարէ, չըմբէ,
Հաւթէ կոճակ,
Մէ պողոճակ.
Դանակ սրի,
Սև խաւի վիզը կտրի։

Ե.

Կարբի գիւղում Բայազէթի գաղթականների մէջ։

Ակկէ, դուկկէ Օմրզա,
Մախտէ կոճակ կոկոզա,
Լուսու մտաւ քարվազա,
Ճուկ պոլոճակ ճանին ճուկ։

Զ.

Նոյն խաղը Երևանում։

Ատատէ, բատատէ
Ճամամ շուլ,
Ճամշուլակին
Մի դամբուլ։

Է.

Նոյն խաղը Ալէքսանդրապօլում.

Ա.

Հատիկ, հատիկ, հալուաուիկ,
Չալ խնձորիկ, փշատի՛ք,
Կուտ ուտեմ, կուտման ուտեմ,
Աւագ դռան պաճիկ անեմ. (պարկեմ)։

Բ.

Ո՚լըմ, ա՚լըմ, աֆանայ
Գեօլդը, չըխտը քեափանայ
Սուլէյմանըն սուչինայ.
Բինդմ հալաւ բոյնընդայ
Ա՚րը գեազար կորխընդայ
Այըմ, սալըմ սալլա բունի
Չա՚ք շունի։

2.

## ԹԻԶՄԱԹԻԶ

Ա.

Դարալագեազի Նոր հայերի մէջ աղջկունք բաժանւում են երկերկու ընկեր և ապա երկու ընկեր իրար դէմ նստած, լայնացնում են մատերը և չորս ձեռքը իրար վերայ տնկում։ Ապա միւս աղջկունք թռնում են այդ ձեռքերի վրայից այնպէս զգոյշ, որ չդիպչի ոչ ոտերը, ոչ էլ շորի ծայրը։ Եթէ դիպչի, դիպչողն իւր ընկերով փոխարինում է նստողներին։ Առաջին թռչողն ասում է հետևեալ երգից մի-մի խօսք և միւսները իւրեանց թռչելու ժամանակ կրկնում են առաջինի ասածը։

Ըսմըլլէ, հայ ըսմըլլէ,
Ըսմլլէ բաբէ տայա,
Բաբէ տատր խաւէլա
Խաւէլա խըզմաթ էլա,
Խզմաթի բաշ իւստիւնա
Բաշն դուար իւստիւնա,
Գեօթն խիար իւստիւնա,
Աթայ մաթայ դայմասըն,
Թաւլը ղոյան տիւշմասըն,
Այ հաւալայ հաւալայ,
Բեօրքն գեօթը, ղաւալա։

## 3. Ա Ր Թ Ո Ւ Ր Մ Ա

*Ալէքսանդրապօլում տղայ երեխայք արթուրմա խաղալիս մինը կռանում է, միւսները նորա վրայից թռնում են։ Առաջինն ասում է հետևեալ երգի մի մի տողը և միւսները թռչելիս կրկնում են։*

*Կտի կտի մաստանայ,*
*Կտիկմ գեալդի բոստանայ,*
*Բոստանչի դէօյդի, դէօյդի,*
*Դէօյդի, կըչը կըռըլդի,*
*Թանով ապուր թէյրանի,*
*Կարպետը ծակ ջէյրանի,*
*Գնացի մի մարագ,*
*Գտայ կճուճ մի կարագ,*
*Ջարկի պատին կոտրեցի,*
*Կանթը էրդիկ թաբլեցի,*
*Աթակ մաթակ հէչ բակմազ,*
*Թառլի կոյին դիւշըմազ,*
*Աւլն էլաւ սարը,*
*Քար կերաւ, քացախ խմեց,*
*Արիւն շռեց, պանիր թափեց,*
*Կօդմ կօրէկ էի ցաներ,*
*Հաւքերն էին կերեր*
*Գնացի բերդի դուռը,*
*Գտայ մի նուռը.*
*Կէսը հոտած էր, կէսն անուշ,*
*Ձապղայ դնել թռնել հէյրանի,*
*Ճապղայ տանել հէյրանի։*

### Բ.

*Նոյն խաղը Մշու գաղթականներու մէջ։*

*Մամուլլա, ջան մամուլլա,*
*Մամուլլա կու բաւէ տա*
*Կուբաւէտա տռմահոլէ,*
*Տղմահոլէ ճանճէ մնճէ,*
*Ճանճէ մնճէ, կռնճէ.*
*Բաբաս եկաւ ճնկլ մնկլ*
*Արտմը կորէկ եմ ցանել*
*Ջիֆրի հաւերն իկերան,*
*Աթակ մաթակ հէչ դագման*
*Տիրուն սիրուն նախսորուր։*

### Գ.

*Նոյնը Ղազախի Ուզունթալա գիւղում։*

*Ըսմըլլէկ, ջան ըսմլլէկ,*
*Ըսմլլէկէ բաւէ կալէ,*
*Բաւէ կալէ չար հաւալ է*
*Չար հաւալ կըսմաթ էլա.*
*Կըսմաթմ բաշխւստիւնայ,*
*Բաշմ դուար իւստիւնայ*
*Տիվլիս տիվլիս կաւանօ,*
*Ա ղըռճօ ղռճօ բէվանօ։*

## 4. ԱԼԻՍ—ՊԱԼԻՍ

### Ա.

Դարալագեազի Էրդափին գիւղում երկու, երեք չորս կամ աւելի աղջկունք միասին խաղալիս, մինը նորանցից ձեռքի բըռնում թագցնում է, որ և է մի առարկայ (մատնոց, թել, մրգեղէն և այլն) և բոլորն էլ բռունները սեղմած դնում են միասին։ Մինը, որ կանխապէս հեռացած է, մօտենում է և և իւր ձեռքը կարգով դնելով ընկերների ձեռքի վերայ, ասում է մի մի խօսք ոտանաւորից, որի վերջին խօսքը եթէ վերջանայ առարկան պահող ձեռքի վերայ, այն ժամանակ գտնողը իւրեան կվերցնի առարկան, իսկ եթէ չգտնի, ինքը կտայ այդպիսի մի առարկայ։

Ալիս, պալիս
Քելի, եարի,
. Ժամտան
Դուռը բաց։

### Բ.

Նոյն խաղը Դալարագեազի Այնազուր գիւգում։

Ըստում Ընդում,
Քարէ տնդում,
Վեր տամ ըստում
Գտնեմ ըստում։

## 5. ՈՏԻՓՈՒԿ

### Ա.

Դալարագեազի Արփա գիւղում մի քանի տղայք բոլոր ի շուրջ նստում են և ոտները ձգում շրջանի կէդրոնը։ Մինը հետևեալ ոտանաւորից մի մի տող իւրաքանչիւր ոտի վերայ արտասանում է և վերջին տողը որի ոտին վերջացաւ, նա պէտք է դուրս գայ շրջանից։ Այդպէս մէկ մէկ հանելով մնում է վերջինը, որին կանգնեցնելով մէջ տեղ հարհրում են ոտերով։

Մօթալ մօթալ,
Թարսի մօթալ,
Դին աթար,
Դամար ղաթար,
Չէյրան ղուլի,
Ջէյրան ղուլի,
Նամարասի,
Լակոտ գցի,
Էս դուս գցի.

Բ.

Կամ այսպէս՝

Հոպպան, գեօպպան,
Իառլ, եըրԹըլ.
Սու իչ, կուրԹըլ,
Աղ գցեմ,
Բողոճ գցեմ,
Վեր նաղարայ,
Չըխ կըրաղայ։

Գ.

Նոյն խաղը Ղազախի ՈւզունԹալայ գիւղում։

Բիրան բիրան,
Իքեան իքեան,
Արվադը խան,
Չէօքմազ,
Դեօքմազ,
Ղարայ ղըր,
Գեօմիւր,
ԳեօԹըր։

6. Թ Ը՜ Ռ Ճ Ն Ճ Ղ Ի Կ

Ա.

Դարալագեազի Նըրդափին, Քարագլուխ և այլ դրացի գիւղերում փոքրիկ աղջկունք, բռնելով իրար ձեռքերի մորԹը, բարձրացնում են միմեանց ձեռքերը և երգում։

Ճիւ, ճիւ,
Ագռաճիւ,
Ագռան գնաց Երուսաղէմ,
Բուրդ բերեց,
Բամբակ չբերեց,
Ջալ արաց,
Ջալուար չարաց,
Թը՜ռ... ճնճղիկ։

Վերջին խօսքի վերայ բարձրացնում են ձեռքերը և ով լաւ չէ ասում, նորան տալիս են «լոպուզ» այսինքն ձեռքով կամաց զարկում են ուռցրած երեսին։

Բ.

Նոյն խաղը Ալէքսանդրապօլում, առանց ծեծի։

1.

Միօ միօ
Փիշօ, փիշօ,
Ո՛ւմ կատուն ես,
—Ոլաբագի.
Ի՞նչ կուզես,
—Չիր ու չամիչ,
Ո՛ւմ կտանես,
—Իմ ձագերուն,
Փիշտա՛ կորի։

Զ.

Ճիւ, ճիւ ճիտոնա,
Հարսին տարան բատոնա,
Ես պարոնին տղան եմ,
Թագաւորին փեսան եմ,
Պարոն աղբար դուրս արի,
Ձիդ ու ջորիդ ինձի տուր.
Չեծնեմ էրթամ Հնդստան,
Քեզի բերեմ մատնստան,
Մատդ դնես փոլկստան
Բու դաղլարը հաբ (բոլորը)
բոստան։

## 7. Պ Ո Ւ Տ (Կ Ա Կ Ա Չ)

Շարուրի Ուլիա Նորաշէն գիւղում երկու աղջիկ մէջք մէջքի տուած բռնում են միմեանց ձեռք և երրորդ աղջիկը կանգնելով նորանց ձեռքերի վերայ ծափ է տալի և երգում է.

Պուտ ձեր էքին, Էքի ջրեմ,
Պուտ մեր էքին, Էքի քաղեմ.
Պուտ ձեր էքին, Կալկուճ (վարսակապ) կարեմ,
Պուտ մեր էքին, Օրոճ (ապակէ կոճակ) շարեմ։

Երգողին ձեռքերի վերայ պտտցնում են։ Եթէ նա սխալուեց, այն ժամանակ ձեռք կբռնի երկու աղջիկներից նորա հետ նա, որի ընտրութիւնը որոշւում է քարէ վիճակով, այսինքն քարի մի կողմը թաց, միւս կողմը չոր, քարը ձգում են վերև, որ ընտրած կողմը վերի կողմը լինի, ընտրողը կբռնի ձեռքը։

8.

Ալէքսանդրապօլում երկու աղջիկ, մէջք մէջքի տուած, միմեանց փոփոխակի բարձրացնում են և տակինը հարցնում է ու պատասխան ստանում։

—Տակդ ի՞նչ կայ. —Վրէդ ի՞նչ կայ
«Եօրղան դօշակ. «Աստղ ու լուսնեակ։

## 9. Ջ Ա Ն Գ Ա Կ

Շարուրի Ուլիա Նորաշէն գիւղում երկու տղայ կամ երկու աղջիկ, մէջք մէջքի տուած, երեք անգամ փոփոխակի լրար բարձրացնում են մէջքի վերայ և տակինը հարցնում է

«զայզանգ», վրայինը պատասխանում է «պամբեաք»: Իւրաքանչիւրը երեք անգամ բարձրացնելով և ասելով, վերջապէս տակինը հարցնում է և ստանում է պատասխան.

—Էդ վեմու ի ելէ տնիսը,
«Ես եմ.
—Ի՞նչ ես ուզելի.
«Քար քշերք:
—Ի՞նչ ես քշռելի.
«Չամիչ, փշատ.
—Իմ պեաժինը կպախՅս.
«Կպախեմ.
—Դէ ար տար:

Այդ բոլոր խօսքերի ժամանակ հեծածը մնում է անշարժ և միայն վերջին խօսքից յետոյ իջնում է և մի րոպէից յետոյ նորից հեծնում է և տակինից հարց ստանալով ինքը պատասխանում է:

—Էդ վեմու ի ելէ տնիսը,
«Ես եմ, քար քշերք եմ պէրէ, առ տար.
—Իմ պեաժին փշատը պէրՅր.
«Կատուն տարաւ:

Այս խօսքի վերայ՝ տակինը վրայինին կատու ընդունելով, սկսում են միմեանց գզգզել:

## 10. ՄԱԼԵԱՔՍԻՄԱ

Ալէքսանդրապօլում աղջկունք երկու բաժին լինելով, միմեանց ձեռք բռնած, բաժինը բաժնի դէմ կանգնում է և իրար հարց ու պատասխաններ են տալի:

—Մալեա՛քսիմա,
«Մեալքի դուդայ.
—Փերո՞ւշայ.
«Փերդին դիւշայ.
—Վեարա վեարա .քիմ Ճրիշայ
«Հոռոմսիմայ (տալով մինի անունը) գեալդի բու ղաթլար:

Յիշած անունը սրընթաց վազելով՝ եթէ դէմի բաժնի շղթան կարողացաւ կտրել, իւր ցանկացածին տանում է իւր բաժինը, ապա եթէ չկտրեց, ինքը մնում է միւս բաժնում:

## 11. ՁԸԽԿԸՐ

Ալէքսանդրապօլում խաղացողները երկու խմբի են բաժանւում և իւրաքանչիւրի պարագլուխները իրար հարց ու պատասխաններ են տալի:

—Խնամի Խորան.
«Ի՞նչ է։
—Ջաւերս կորան, ձեր տունն է.
«Մեր տունն է։
—Քշէ, քշէ գայ.
«Քշեմ, քշեմ, չի գայ։
Տաք տաք ապուռ վրէն լից գայ.
«Լրլեմ, լրլեմ չի գայ։
Մախաթ կոխէ թող գայ.
«Կոխեմ, կոխեմ չի գայ։
—Ջաւերս քանի՞ հաւկիթ են ածէ,
«Մաղ ու կէս։
—Քա, ան օր ես ձեր դռնէն ան-
ցայ, ան ի՞նչ պարակ մուխ կել-
լէր ձեր չերդիկէն.
«Ջարսս պարկեր էր՝ տղայ էր պե-
րէ, ձուաձեղ էփեր էի։
—Ի՞նչ է պերէ.
Մանչ.
—Անունը ի՞նչ դրիք.
«Ստեփան։

Այս անուան վերայ երկու բաժինն էլ խառնուելով իրար թռչկոտում են և ծափահարում և մի քանի անգամ ասում են «չըխկըր, չըխկըր, Ստեփան»։

## 12. ՃԼՈՐԹԻ, ԿԱՄ ՃՕՃ

Առաստաղից, ծառից կամ այլ յարմար տեղից թոկ կախելով մէջը նստում են և ճօճւում։ Խաղը կոչւում է Ղազախում և Երևանի կողմերում *ճլորթի*, Բասենում *ճօճք*, Դարալագեազի Նոր հայերի մէջ *չամչիլ* կամ *քըշկօ*, իսկ հին հայերի մէջ *քիւվանջի*։

Ճլորթի ընկնելու համար խմբւում են աղջկունք կամ տղայք կամ երկուսն էլ խառն։ Երբեմն ճօճւողի ոտերին զարկելով պահանջում են, որ նա իր սրտի ընտրածի անունն ասի։ Ճլորթի ժամանակ երգում են։

Ա.

Երևանի կողմերում։
Ջու, չու, չուանդի,
Իմ աղբերը Գեանջայ ա,
Գեանջի խանի դռանն ա,
Սամուր քիւրքը կռանն ա,
Փետէ փետէ մարդիկը,
Երկաթէ կնանիքը,
Փունջ մանիշակ աղջկերքը
Վարդ ու խնձոր տղէրքը։

Բ.

Հին Նախիջևանում։
Քիւ, քիւ, քիւվանջայ,
Իմ աղբէրը Գեանջայ,
Գեանջու խանի դռանը,
Կանանչ կապէն կռանը։

Գ.

Ղազախի Ուզունթալայ գիւղում։

Չիր, չիր, չիչանչայ,
Իմ աղբէրս Գեանջայ,
Գեանջու ղալի դռանն ա,
Թուլայ քաշեմ ձիանն ա,
Կտլի կտալը կեցին, (հագած)
Ոկալ քցի ծալքին,
Տալքը ղումշով լի.քը,
Տիւռը թուխ կեօմշով լի.քը
Փուդառ փուդառ (կարճ, անշնորհ) մարդիկը,
Ոսկէ քեաքլուլ տղէրքը.
Փունջ մանիշակ աղջկէր.քը։

Դ.

Ճլորթի բաղի,
Ջիմշիրի թաղի,
Ջիմշիրը փուլ կեայ
Տակովը ճիւր կեայ։

Հ Ա Ն Ե Լ Ո Ւ Կ Ն Ե Ր

Ա.

Ղազախի Ուզունթալայ գիւղում։

Ծիծեռնակ

Սև սււ տանայ
Բարձր տանն ա։

—

Մ ո ր ի

Ես լալազարն եմ,
Խոտ խոտի խառնեմ,
Գիտես թէ դառն եմ,
Կարմիրն խիար եմ։

—

Արեգակ եւ լուսին

Սար ու լար,
Երգեան ու լար,
Երկու կաքաւ գնալ ու գալի։

—

Ս ա զ ը

Ալալա, վալալա,
Տար խաղ արա,
Պիր կախ արա։

—

Գղինձը եւ կասկարինճը

Որաքը չոքեց,
Ասլանը նի ըլաւ։

—

Մ ա տ ն ե ր

Իմ հօրանց տասը եզը,
Տասն էլ ղաշղայ։

—

Մ կ ր ա տ ը

Մի կով իմ հօրանք,
Մատերս կոխեմ քամակը,
Արուճ (որոճ) է անում։

—

Ոստայնահորի ոտատախտակները

Մի ձորում երկու աղուէս
Ծունր են դնում։

**Հրացան եւ գնդակ**

Կովը պառանչեց
Հորթը փախաւ։

—

**Կամնը**

Փէտէ կիւշ
Քարէ բրդիւշ։

—

**Դրգալ**

Ոլ կընկըլիկ,
Ձալ կընկղիկ,
Քանի բեռնեմ,
Տար, կընկղիկ։

—

**Ածելի**

Ասլանը նի ըլաւ.
Անհամբարքը վեր բերեց։

—

**Երկինքն ու աստղեր**

Գոմշի կաշին չի ծալուիլ,
Աւազը չի համբրուիլ։

—

**Գլխարկ**

Վեր առնես՝ կդարտակուի,
Վեր դնես՝ կլցուի։

—

**Ասեղն ու թելը**

Լրպըստեմ՝ ծակդ նիտամ։

—

**Կաչաղակ**

Խոջան եկաւ,
Գազը ետքին։

—

**Ծիածան**

Ըստի չոքեմ,
Դաղստան ճիւր խմեմ։

—

**Միտք**

Ըստիանց քէ նի թողեմ։

—

**Ոտերը եւ ոտնամանները**

Կոթաւորը մաշւում է,
Ձուաձեղը չի մաշւում։

—

**Հրացան**

Երկաթէ մեռել,
Փետէ գերեզման։

—

**Գինի (եռացող)**

Տափի տակին բուղան գոռում ա։

—

**Ոչիլ**

Սարից ընկնի, չի ջարդուիլ,
Ըղունկներից կջարդուի։

—

**Նուռը**

Փստի թորոն,
Ճեղջով լիքը։

—

**Վիլա եւ վլինինք**

Ինքը կգնայ վազէ վազ,
Գոտիկ ունի հարիր գազ։

—

**Մեղու**

Գգնայ, կգնայ, իզ չունի,
Մեր ունի ու հէր չունի։

—

**Ճրագի լոյս**

*Բունեմ բռնովս մին,*
*Բաց թողնեմ տանովս մին.*

—

**Աչք**

*Սեւ սալայ, սիպտակ սալայ,*
*Խաթունը միջին կծլվլայ.*

—

**Ձիու ոտրի հետք**

*Ըստեղից Երեւան,*
*Մանր քրեղան։*

—

**Արեւի շողը**

*Էստեղ պուպուզ,*
*Էնդեղ պուպուզ,*
*Կտրովը դուս։*

—

**Անկողին**

*Ցերեկն աղայ,*
*Գիշերը նեօքար.*

—

**Օձը**

*Մսէ շամփուր տափի տակը։*

—

**Ոտ եւ գուլպա**

*Կոկլիկս բրդբրդոտդ։*

—

**Մասուր**

*Սև սիրէգ, կարմիր պուլիկ։*

—

**Հաւկիթ**

*Դուրսը արծաթ*
*Մէջը ոսկի.*

—

**Խնոցի**

*Իմ հօրանց մի եզը,*
*Պորտը քամակին։*

—

**Մուկը**

*Հողէ լուլայ,*
*Մսէ գիւլլայ։*

—

**Մոշ**

*Կանանչ հինեմ,*
*Կարմիր թել տամ,*
*Սեւ կտրեմ։*

—

**Սաջ** [1]

*Եղը չուլեմ,*
*Ձուլն ուտեմ։*

—

**Իլիկ եւ ոստ**

*Ձունը մռաց,*
*Դունչը ուռաւ։*

**Ջրաղացի փռռան**

*Մի ոտ,*
*Երեսուն թեւ։*

—

**Ջրաղացի քար**

*Երկու սար,*
*Կրծում են իրար։*

—

**Բահով վար**

*Ցետ յետ գնաս,*
*Առաջդ սեւանայ։*

—

**Ջրաղաց**

*Տրտինգ կանի եամաճ եամաճ,*

[1]) *Բոյ, որի վրայ սարուժը հաց են թխում.*

Աշխարհ կուտի կամաց կամաց։

—

**Մրջիւնի բուն**

Մի գոծ ունեմ մի խորում
խոտ չի տանիլ.
Հազար գլուխ ոչխար կտանի։

—

**Ե.**

Պարալագեազի գիւղերում։

**Ծծում**

Հետ ինձի կերթայ կիկայ
Մօր բոյին բարև կտայ։

—

**Գուլպա**

Առատոնը ոտերս ճխտեմ մէջը։

—

**Ջրաղաց**

Ջուրը կապեն տակը կկատղորի։

—

**Գետն իւր ջրով, ափերով**

Էս թեխը դար,
Էն թեխը դար,
Մէջ տեղը անդադար։

—

**Տրեխ**

Մի քիթ ունի, քառսուն աչք։

—

**Չորքան**

Ամառը կպաղի, ձմեռը կբացուի։

—

**Մորթէ գտակ**

Ջինքը մի թիզ, մրուսը խազար։

—

**Սնուն**

Քեզի դրիմ, կպաւ։

—

**Թոնդիր եւ ծուխ**

Կարմիր ծովը նեսը կբոռայ,
Սև կովը դուռը։

—

**ԹԱՓՄԱՋԱ**

Երեխայքը ազատ ժամանակ, գլխաւորապէս տօն օր կամ երեկոյեան խմբւում են և առաջարկում միմեանց յանգով վերջացած հարց ու պատասխաններ, շատ անգամ սրամիտ բովանդակութեամբ։ Հարցերին կամ ուղղակի անպատրաստից պատասխանում են կամ հարցը կրկնում են և հարց առաջարկողը պատասխանում է։ Պարալագեազի նոր հայերի բարբառով կոչւում է *թափմաջա* այսինքն գտնելիք և դա շատ յաճախ հեղինակւում է խսկոյն, առանց նախապատրաստութեան, հակառակ հանելուկների, որոնք մի անգամ ընդ միշտ հեղինակուած են։

## Ա.

Ճարուրի Ուլիա Նորաշէն գիւղում:

—Ասը՝ ճաղչի ակնատը լինքը ճան.
«Մկները պերնիդ մրմնջան.

—

—Հա՛յ՝ ասիր Ենգիջայ, (գիւղ
Ճարուրում)
«Ուտես մի գուռոտ (բորոտ) ջիւջա։

—

—Հա՛յ, ասիր գետին,
«Ուտես վարդըրպետին խետին։

—

—Հայ՝ ասիր Նարդիվան.
«Բողկ ուտես կայնես դիվան։

—

—Հայ՝ ասիր էրդիս,
«Ուտիս հաւի միս։

—

—Հայ՝ ասիր քսան.
«Դայա բաբադ փսփսան։

—

—Հայ՝ ասիր ջռայ. (կարաս).
«Էշու պէս բըռայ։

—

—Հայ՝ ասիր եափնջա.
«Ուտես շան փաչա։

—

—Հայ՝ ասիր երթանք ճւր.
«Քէ տանեմ մի կեխտոտ խուր։

—

—Հայ՝ ասիր երթանք ցախի,
«Ես կոլոնեմ, տիւ խլի փախի։

—

## Բ.

Ուզունթալայ գիւղում, ուր չէ կոչւում Թափմաջա։

—Ասա՝ իմ հօրանց տան եղը.
«Մեզ պահապան Սրուէղը (վանք
գիւղի մօտ։)

—

—Ասա՝ մին, երկու, չորս,
«Թուանքդ առ՝ գնա յորս։

—

—Ասա՝ մեծ գէլ, փստիկ աղուէս.
«Մեղր ու կարագ մէջը Թ աղուէս։

—

—Ասա՝ տասնուհինգ.
«Աչքդ դնեմ երկաթէ լինգ։

—

—Ասա՝ մեր տան մէջը մի թո-
րոն (թոնդիր)
«Թորնի մէջը մի մերոն (ծնի խոզ.)

—Ասա՝ պատի տակին սուր կացին,
«Փորիդ կտամ էս քացին։
—Ասա՝ ապի.
«Ձին սարում կապի, յետնէն
տապտապի։

—

—Ասա՝ ջորի,
«Ես վրայ պրծնեմ, դու կորի։

—

—Ասա՝ կիւթան
«Ես եղ ուտեմ դու թան։

—

—Ասա՝ յերինջ.
«Ես հաց ուտեմ դու քերինջ

—

—Ասա՝ մարդ.

«Մարդը բռնեց մի չարթ (կա-
չաղակ)։

—

—Ասա՝ մորի.
Արի գլուխս քորի։

—

—Ասա՝ մարագ.
«Ես սեր ուտեմ, դու կարագ։

—

—Ասա՝ տասը.
«Ուտես թանով սպասը։

—

—Ասա՝ քսան.
Պապդ գնայ Խորասան։

—

—Ասա՝ իրեք.
«Երեսիդ քաշեմ սիրէգ։

—Ասա՝ խոզ.
«Ճակատիդ դնեմ իծի պոզ։

—

—Ասա՝ դուռը.
«Դու շլոր կեր, ես նուռը։

—

Ասա՝ սապուն.
«Ես քեզ դնեմ հաւաբուն։

—

—Ասա՝ ձեռքինս դանակ ա.
«Ինչ որ ասեմ հանաք ա։

—

—Ասա՝ չխթն ու կխթան ճա-
լումն ա.
«Հարսն ու աղջիկ Ուզունթան-
լումն ա։

## ԱՐԱԳԱԽՕՍՈՒԹԻՒՆ

### Ա.

Ուզունթալայ.

1

Աւլն ըլաւ ուռի ծառը,
Ուլ պոչովը ուռ յոլորեց.
Ուռի պէս յոլորած ուռով
Ուլ ձեռովը դլուռ յոլորեց։

2

Ծտի ճուտի ճիտը ծուռ։

3

Ըստեղ նօթատուճ,
Ընտեղ ձիթատուճ,
Զալ ծտին չալ ծտաճուտ։

4

Սեռն ի վեր գնամ, սերն ուտեմ,
Ցեն ի վեր գնամ, սէրն ուտեմ։

5

Փոկակապ Ակոփ ապի,
Ինձ համար մի փոկ կապի,
Ես քէ ասեմ փոկակապ Ակոփ ապի։

6

Եդդի սախկալ թփփլ չփիչ։

### Բ.

Էրդափին (Դարալագեազ).

1

Էրկըթէ էրդսկալ։

2

Զուկը մուկը մէկ տապակ,
Զուկը ուտեմ մուկը թալեմ։

Գ.

Ուլիա Նորաշէն (Ղարուր).

Տանձ գլդեօրեմ, տանձ ուտեմ,
Բողկ գ'լդեօրեմ տանձ ուտեմ։

Դ.

Ղամախի.

Ձորին էնա ճրին ձորում,
Հա՜յ ճորատէր, հայ ջրատէր,
Ձորուն ճիւլը ծուռել ա։

Ե.

Ալէքսանդրապօլ.

1

Մեր դուռը կայ բանցր, բանցր,
Ծանդր ծանդր տանձի ծառ,
Ձեր դուռն էլ կա՜յ բանցր, բանցր
Ծանդր ծանդր տանձի ծառ։

2

Բեռի, ալի (էլի, (կրկին) առ ադ
 ալըրէն։

3

Թըրըփ, Թըրըփ, փէտի փեթակ
Դըմկի դանակ։

# ԱՂՕԹՔՆԵՐ

## Ա.

Վախ բռնելու աղօթք Երդափինում (Դարալագեազ).

Որդի դաբալաբզիկ,
Հՙր կիլաս, հՙր կվախնաս.
Ասաց, կլամ, կվախնամ.
Գիշերուայ գիշութենէն,
Ցերեկուայ փորձութենէն։
Ասաց, մի լա, մի վախնա,
Չէ՞ դու խովիւ ես Քրիստոսին,
Գնա եկեղեցին, գիրեն
Ջինջիլ դիր վիզնը գողուն,
Կապա ձեռնը դևուն,
Անօրէն ետև պատին
Թամք զօձուն՝
Զուր գայ բարի լուս Քրիստոսին։
 Քրիստոսի գալուս,
 Զար խափանոս,
 Եկեղեցի պախպանեցի,
 Որ պախեցիր տէրնը խաչին,

 Կուսը չերին
 Գերեզմանը Քրիստոսին,
Մեռած մարմինը մութը գիշերին,
Դուռը բացինք անմահութենին,
Մեր Տէրն էրէւէցաւ,
Ձէն տուեց չորս կողմը ցաւ,
Չորս կողմը աշխարհ թնդաց.
Որն արդար էր՝ դա խնդաց,
Որ մեղաւոր, քզուռ (քանզ ուռ)
 դողաց.
Մարիամ չոքաւ վըր ուր ծնկան,
Արցունքով զուր ծունկ լուաց,
Ասաց, Տէր, մի տանիր մեղաւորս
 մեղաց,
Քու յաւազան ա մկրտած,
Քու խաչին ա դիպուցած։

Բ.

Դարալագեազի Ազատակ գիւղում պառաւ կինը իւր գըլ-խածածկի (լաչակի) մի ծայրը տալիս է վախեցած երեխայի ձեռքը, միւսն ինքը բռնած՝ երեք անգամ մօտեցնում է երե-խայի սրտին և հետևեալ աղօթքներից մինն արտասանում։ Կամ բամբակից պատրոյկ է ոլորում երկարութեամբ երեխայի գօտկից մինչև նորա քիթը և աղօթելուց յետոյ այրում է նորան։

1

Սուրբ Դանիէլ, մեղայ քեզ,
Բան որ մտաւ նեղ տապան,
Նապեց ինձ. առիւծ,
Գէլը կծաւոր,
Օձը թունաւոր,
Կարիճը խիթաւոր,
Ձին ձիաւոր,
Ուխը մատով,
Երկու բոթով,
Սողոմոնի ձիանւ ծարով,
Աստուածածնի քաղցրիկ կաթով
Կալած կենաս ընդ գալուստ Քը-
րիստոսի։

2

Թագայ հացի հոտ եկաւ,
Քելէք տեսէք գոր էկաւ,
Հետ էկաւ իրեք ձիաւոր,
Մէկն ի կանանչ կապաւոր,
Մէկն Յիսուս, մէկն ի Քրիստոս,
Մէկն ընձանոց Աստուածածին,
Եկաւ սարով, իջաւ ձորով,
Եդ դոր կըթաք լսազար բարով.
Կէթան դուռն ի չերին,
Մարիամ նստեց դէմ խաչաքարին.
Աստուած տուեց Յիսուսի որդին,
Եվ չվախենայ սիրտն ի փորին.
Ջինջիլ Թալի բոլոր պատին։

3

Մեր տէրը մէ խուր,
Տեղիկը մուր,
Հացիկը գարի,
Թանիկը թթու,
Քթելը պոչատ,
Մարդիկը պծրի,
Կնիկը չարի,
Յիսուս Քրիստոս Աստուած։

4

Յոյս ունիմ յուսիս.
Աստուած ունիմ մտիս.
Ածամէր դէմ երեսիս.
Գաբրէլ խրեշտակ վըր աչ թևիս
Ոչ վախենամ, ոչ գարգնդիմ,
Ունչու գալուստն Քրիստոսի։

5

Ուսին ուսին
Ջսուրբ կուսին,
Ընկոյ էկաւ Քրիստոս որդին.
Խրեղէն խաչը վըր թևին.
Երեք բևեռ կար վըր խաչին։
Մէկը սիրտն ի սատանային,
Մէկն ամէն չար խափանի,
Մէկը չվախենայ սիրտն ի փորին։

## Գ.

*Ալէքսանդրապօլում նորածնունդ մանկան փաթեթելուց յետոյ տատմայրն առնում է նորան իւր գիրկը և թուրը կամ թաթալիշը ձեռքն առած, կամ երեխայի վրայ մի հաց-լաւաշ սփռած, տանում է դուրս և դէմքը դէպի արևելք՝ տատմայրը եօթն անգամ տեառնակնքում է իւր երեսը և յետոյ արտասանում է այս աղօթքը.*

1

*Երկիր աշխարին խաղաղութէն,*
*Թագաւորաց հաշտութէն,*
*Քրիստոնէից ապատութէն,*
*Ծախորթութ՚ան մարդկանց աջո-*
*ղութէն,*
*Կապելոց արձակութէն,*
*Ամենան փափգաց լիութէն,*
*Մենձերուն արքայութէն,*
*Ջահիլներուն արևշատութէն։*

*Յորան կրկնում է տուն մտնելիս և ապա երրորդ անգամ մանկամօր առաջ կանգնած։*

2

*Վերոյիշեալ աղօթքից անմիջապէս յետոյ տատմայրը ասում է հետևեալը։*

*Պօղոս Պետրոս, ո՞ւր կերթաս,*
*Դուռը կերթամ հիւնդի,*
*Երդիկ կերթամ ծնըդկանի,*
*Աչ վախենայ սիրտը փորին.*
*Օսկոռը տեղը չթնդայ,*
*Իսն էկաւ Իսուս որդին,*
*Սուռչալեցին Քրիստոսին.*
*Հէրն աչեց, որդին խաչեց,*
*Տէր մեր Յիսուս Քրիստոս։*
*Էս տունը տուն է,*
*Քրիստոս մէջը քուն է,*
*Կաւազանը դռան փագիչ,*
*Սուռչալը էրդեց ծածկոց,*
*Տէր մեր Իսուս Քրիստոս,*
*Աստըծոյ աչը, Քրիստոսայ խաչը.*
*Վրէն եղնի, ամէն։*

3

*Ընդունելով օր իբրև թէ հրեշտակները մանուկ Քրիստոսին բերել տուել են սուրբ կոյս Մարիամին և ասել են ստորև յիշեալ խօսքերը, Ալէքսանդրապօլում տատմայրը այդ խօսքերը հարց ու պատասխանով երեք անգամ կրկնում է և իւրաքանչիւր կրկնութեան ժամանակ մանկանը դիպցնում է մօր ծնկներին։*

*—Մարիամ, ես եմ ծանդր թէ դու. հարցնում է տատմայրը.*

*«Տու ծանդր, ես թեթև. պատասխանում է մայրը։*

4

*Անդրանիկ ծննդի ժամանակ նոր ազատուած կնոջ փորի ցաւը կտրելու համար՝ տատմայրը թուրը աջ ձեռքով եօթն անգամ մանգաղի նման անց է կացնում իւր ձախ ձեռքի տակով՝ կնոջ փորի վերայ և ամէն մի անցկացնելու ժամանակ հարց և պատասխանով ասում է հետևեալը։*

*— Ահան, ես կքաղեմ.*

*«Ի՞նչ կքաղես.*

*—Հեղինէի (ազատուածի անունը) սանջուն կքաղեմ։*

Դ.

ԱՂՕԹՔ

*Վախ չափելու համար։*

*Թաւրիզից գաղթած հայերի մէջ պառաւ կանայք երեխայի վախը չափելու ժամանակ, տէրունական աղօթքից յետոյ ասում են հետևեալը։*

*Եկաւ, եկաւ երեք ձիաւոր,*
*Մէկը Իսոս, մէկ Քրիստոս,*
*Մէկը մայր Աստուածածին,*
*Ելաւ սարով, էջաւ ձորով,*
*Ուր էս էթում,*
*Դուռը խիւանդին,*
*Մի վախացիր սերտը փորին,*
*Ժնջել (շղթայ) քցեմ բարձր բոլոր,*
*Ցէր (մինչև) դատաստանը գալը.*
*Բարեխօս մայր Աստուածածին,*
*Թաթոս առաքել,*
*Օհանէս Մկրիչ*
*Զօրաւոր սուրբ Գէորգ,*
*Զօրաւոր սուրբ Սարգիս,*
*Օգնական պախապան ըլէս,*
*Տասներկու առաքել,*
*Օգնական պախապան ըլէս.*
*Չարից, փորձանքից ազատես,*
*Ասված օղորմի Գրիգոր լուսա-*
*ւորչայ ասկին,*
*Ասված օղորմի Կոդանդայ Թագաւորին,*
*Կուշտը խաչով,*
*Կուշտը մանիշակով,*
*Ամէն։*

Ե.

ՁԱՐՆԻԱԹ

*Ճարուրի Ուլիա Նորաշէն գիւղում հիւանդ կամ վեր թըռչող երեխային աղօթում են այսպէս։ Փոքր ալիւրի խմոր քըսում են հիւանդի մարմնի զանազան մասերին և շինելով նո-*

րանից եօթը գնդակ, որ կոչւում է *Բլօլայ*, իւրաքանչիւրը մեծ աճեղով եօթը տեղ ծակում են և ամէն մի ասեղ զարկելիս ասում են։

Չար աչքը չար փուշ, Չար նիաթը չար փուշ։

Ապա բոլոր գնդակները ձգում են վառ. թոնրի մէջ և եթէ նորանցից մէկն ու մէկը տրաքի, հիւանդի լաւանալու նշան է։

## Զ.

## «ԳԷԼԿԱՊ» ԱՂՕԹՔ

Շիրակի Հոռոմ գիւղում, ուպէս զի դաշտում գիշերը մնացած անասունին գայլը չվնասի, անասունի տէրը դիմում է *գէլլապ* անողի օգնութեան։ Մազից հիւսած թոկով աղօթարարը կապում է շէրեփը սիւնին գլուխ ի վայր և երեք անգամ իւր մտքում կրկնում է հետևեալը։

Գէլ, գէլ,
Բերանդ թնջըղ կապեմ,
Ութ մատով, երկու բթով

Սուրբ Սարգսի ձիու ձարով (վզի մազ,)
Մայրամ Ասվածածնայ կլխու ծամով։

## Է.

## ԻՒՂՆ ԱՌԱՏԱՑՆԵԼՈՒ ՀՆԱՐ

Ուլխա Նորաշէն գիւղում, ով կամենումէ որ իւր կովերի իւղն առատ լինի, համբարձման նախընթաց երեկոյին, որ կոչւում է *կամնաւի իրիկու*, նա մի պղուղ առած, լուռ և անձայն, հարցնողին առանց պատասխանելու, գնում է առու և պղուղի բերանը միշտ դէպի առուն բռնած։ Պղուղը լցնում է ջրով առուից և գնում է ուղղակի Թուրքի հանգըստարան, ուր երեք անգամ ասում է։

Մօլլխա ռահմաթ, յՌըզըմ ա-
դայ ղօնաղ գեալըբ.
Եաղըմըզ կուրթուլուբ,
Դուր, բըզայ բիր ազ եաղ վեր։

«Երանելի մօլլա, մեր տունը
հիւր է
Եկել, մեր իւղը վերջացել է,
Վեր կաց մի փոքր իւղ տուր մեզ»։

Այսինքն.

## Ը.

## ԱՆՁՐԵՒ ԲԵՐԵԼՈՒ ՀՆԱՐ

### 1

Սպահանի գաղթականների մէջ երաշտ տարին անձրև բերելու նպատակով խրտուիլակ են ման ածում, որ նորանցում կոչւում է «Թաքեամ» և դռնէ դուռ պտտցնելով երգում են։

Թաքեամ, Թաքեամ եկել ա,
Ձեր դռանը չոքել ա.
Եղ տուէք պորտը քսենք,
Բրինձ տուէք փլաւ անենք,
Ձու տուէք ձուաձեղ անենք,·
Ջուր տուէք լողացնենք։

### 2

Ղափանի գիւղերում անձրև բերելու նպատակով մի կին, շէրեփը ձեռքում, Թարս նստացնում են իշու վերայ, իշու գըլուխը Թանով սպիտակացնում են։ Ապա այդ իշու տիկինը ամբոխի հետ շրջակայում է գիւղի մէջ, տնէ տուն և երգում է հետևեալը։

Գեօդի, գեօդի գեօրդըմի,
Գեօդիա սալամ վերդըմի,
Գեօդի գեդաննան սոնղրայ
Գըզըլ գիւնի գեօրդննի,
Կազմայադըմ չխարդտըմ,
Գըզըլ կայ'այ դիբըննան
Գըզըլ գիւնը չխարդտըմ։



